

ՆԿԱՐՈՒՄ—Կրեմլ, Համագումարների պալատ, պիոներները ողջունում են ՍՄԿԿ 24-րդ համագումարի պատգամավորներին:

# ՍՄԿԿ 24-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*Շատ քիչ ժամանակ է անցել այն նշանավոր օրերից, երբ մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության 24-րդ համագումարը:*

*Համագումարը ամփոփեց ութերորդ հնգամյակի արդյունքները և մշակեց զարգացման նոր հնգամյա պլան, որը մեր ժողովրդին բերելու է նյութական ու կուլտուրական առավել բարեկեցություն, է՛լ ավելի երջանիկ ու ապահով կյանք:*

*Նոր հնգամյա պլանում մեծ ուշադրություն է հատկացվել նաև պիոներ-դպրոցականների ուսմանն ու հանգստին: Եթե նախորդ հնգամյակում միջնակարգ կրթություն էին ստացել մեր երկրի շուրջ 16 միլիոն տղաներ ու աղջիկներ, ապա առաջիկա հինգ տարիներին լրիվ միջնակարգ կրթությունը դառնալու է պարտադիր: Վիթխարի միջոցներ են տրամադրված նոր դպրոցներ, պիոներ-պալատներ, պատանի բնասերների ու տեխնիկների կայաններ կառուցելու համար:*

*Այս և ուրիշ բարեփոխությունները, որոնց մասին խոսվեց ՍՄԿԿ 24-րդ համագումարում, մեր պիոներների 23 միլիոնանոց բանակի առօրյան է՛լ ավելի հետաքրքիր ու բովանդակալից են դարձնելու:*

## ՔԱՋԱՐԱՆ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Շուրջը՝ լեռներ վեհանիստ,
Ու բոլորն էլ՝ թավշապատ,
Բայց ամենից ավելի
Այս մեկով ենք մենք հպարտ:
Նա՝ պսակն այս լեռների,
Գանձեր ունի բյուր-հազար
Եվ իզուր չէ, սիրելի՛ս,
Որ կոչվում է Գանձասար...

Այս լեռների պես թիկնեղ,
Ահա մարդիկ չլապինդ,
Բաց են անում ընդերքը,
Մոլիբդեն են դուրս հանում:
Հանքագործի հաղթ ձեռքը
Ինչե՛ր ասես չի անում...

Գայլիկոնը պինդ սեղմած,
Հորատանցք են բաց անում,
Ապա բացած քարանցքում
Պայթուցիկ նյութ են լցնում:

Հսկա լեռը դղրդում,
Փոշու ամպ է վեր ելնում:

Թվում է, թե երկինքն ու
Երկիրն իրար են խառնվում...
Ու հանում են անդադար
Գանձե՛ր, գանձե՛ր անսպառ:
Եվ իզուր չէ, որ լեռն այդ
Անվանում են Գանձասար:

## ՄԻՆԱՍԻԿԻ ԵՎ ԳԻՐ ՈՒԼԻԿԸ

ՁՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Մինասիկը վազում էր ուլիկի ետևից ու բարձրաձայն ասում.

— Նախադասության այն անդամը, որը ցույց է տալիս մի բան անող կամ լինող առարկան, կոչվում է ենթակա:

Նա չգիտեր՝ ինչ է ենթակա, ստորոգյալ, նախադասություն: Նա դեռ դպրոց չէր գնում. ավագ եղբայրը դասը բարձրաձայն սերտելիս՝ Մինասիկը մի քանի բան անգիր էր արել: Պահմտոցի խաղալիս մտնում էր ամբարի ետևը և, մթության մեջ տապ արած, շշնջում.

— Գումարելիների տեղափոխությունից գումարը չի փոխվում:

Նա մինչև քառասունը կարող էր հաշվել, իսկ մինչև քսանը կարող էր գրել: Իր իմացածը նա արտասանում էր ոգևորությամբ, երգելու նման: Նա հրճվում էր իր գիտելիքներով, ծիծաղում էր ու ասում հիմա էլ մեկ ուրիշ բան.

— Տարին ունի չորս եղանակ՝ գարուն, ամառ, աշուն, ձմեռ:

Այդպես էլ պահմտոցի խաղալիս լսում էին նրա ձայնը և գտնում:

Նա խաղում էր ուլիկի հետ, քաշում նրա պոչեբից, բարկացնում ուլիկին, ուլիկը խոյանում էր նրա վրա: Իսկ Մինասիկը ծիծաղելով փախչում էր ու բարձրաձայն ասում.

— Այժմ աշխարհի բոլոր ազգերն ունեն և՛ գիր, և՛ գրականություն:

Ուլիկը կանգ էր առնում, բարկացկոտ նայում չարաճճի երեխային, իսկ Մինասիկը կանչում էր նրան և ասում.

— Արի՛, արի՛: Այժմ աշխարհի բոլոր ազգերն ունեն...

Ուլիկը կրկին խոյանում էր նրա վրա, և Մինասիկը խույս տալով՝ երգելու նման հրճվագին ճչում էր.

— ...Ունեն և՛ գիր, և՛ գրականություն... գի՜ր և գրականությո՜ւն... Արի՜, արի՜...

Այնքան էր այդ բառերն արտասանելով ուլիկի հետ խաղացել, որ երբ Մինասիկը գնում էր հանդ իր ուլիկին բերելու, կանգնում էր մի բարձր տեղ և կանչում.

— Եվ գիր և գրականությո՜ւն... Եվ գիր և գրականությո՜ւն...

Ուլիկը հեռվից լսում էր նրա ձայնն ու մոտենում: Եվ նրանք միասին վազելով գալիս էին տուն: Ճանապարհին Մինասիկը հրճվագին ճչում էր.

— Հինդուկուշի լեռները ձգված են Աֆղանստանից մինչև Հնդկաստան:

Հետո ուլիկին կանչելիս նա միայն ասում էր.

— Ե՛վ գիր, և՛ գիր, և գի՜ր,— ու դարձյալ ուլիկը լսում էր ու մոտենում:

— Ի՞նչ է, քո անունը Եվգի՞ր է,— ծիծաղում էր Մինասիկը:

— Մկկկա՜,— իբր՝ հա, ասում էր ուլիկը:

— Լավ, թող քո անունը լինի՝ Եվգիր:

Մի օր շատ կանչեց Մինասիկը.

— Եվգի՜ր, Եվգի՜ր, Եվգի՜ր,— այծը չկար:

Սիրտը կասկած ընկավ: Ջուր է հոսում քարափի տակով՝ առու: Առվի վրա ընկած է գերան: Երկու համառ այծ հանդիպեն, ինչպես ավագ եղբոր դասագրքում է նկարված, հանդիպեն, որ ճակատ-ճակատի տան, ընկնեն ձորը:



— Եվգի՜ր, Եվգի՜ր,— կանչում էր Մինասիկը:

Մութն իջնում է, սարի ետևը՝ անտառ: Անտառը մութ, ամեն տեսակի գազանով լիքը: Ուլիկը մոռանա արևին նայել, արևը մայր մտնի՝ չտեսնի, վազելով ուշենա տուն գալ՝ ճեկ էլ.

Գայլն է կտրում վերևը,
Խուքին տալով այս ձևը...

Ավագ եղբոր գրքում այդպիսի մի պատմություն կա...

— Եվգի՜ր, Եվգի՜ր,— ավելի վախեցած կանչում է Մինասիկը:

— Մկկկա՜,— լսվեց ձայնը:

Մինասիկը վազեց ընդառաջ, և նրանք հանդիպեցին ձորի պռընկին: Եվգիրը կանգնած որոճում էր, մի չոր տերև թիթեռի նըման՝ պռչի ծայրին:



— Ո՞ւր էիր, մենա՞կ էիր: Բա հարևանի ուլիկն ո՞ւր է:

— Մկկկա՜:

— Հիմա կգա՞:

Հա՜, հիմա կգա, մի թափառաշրջիկն էլ նա է: Առա՛ջ ընկիր:

— Մկկկա՜:

— Ասում է՝ ընկա, մնում է կանգնած: Գայլը քեզ հո չի՞ տեսել:

— Մկկկա՜:

— Մտքումը կա՞:— Մինասիկի սիրտն ահ ընկավ: Ուրեմն գայլի մտքում կա: Նա գրկեց ուլիկի պարանոցը:— Գայլ չկա, գայլ չկա: Ասա՝ չկա, ասա. չկկկա՜...

— Մկկկա՜:

— Կա՛, ճիշտ է, կա՛, Եվգի՛ր, վազե՜նք...

Եվգիրը առաջ վազեց, քարեր գլորվեցին ձորը, քարերը մթության մեջ ընկան ձորը, չմփչմփացին:

Մութ էր, տունը հեռո՜ւ, լույսերը չէին երևում: Մինասիկը վախից կառչել էր Եվգիրի երկայն մազերից... Իսկ այն ի՞նչ է պռչի ծայրին, սև:

— Վազի՛ր, Եվգի՛ր, վազի՜ր...

Վազեցին երկու ընկեր, սարսափելով մտան մութ ձորը, ուրախանալով դուրս եկան, մի քիչ էլ վազեցին ու տեսան տան լույսերը...

Տանն իր ուլիկին Մինասիկը ջուր տվեց: Եվգիրը խմեց, մորուքը թրջվեց ջրի մեջ, գլուխը դարձրեց դեպի էլեկտրական լամպը. մորուքից կաթ մի կաթիլ

# ԼՈՂՈՐԴ ՍԵԹԸ

*ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Երբ ճամբարում կիսվեց օրը,
Արեգակն էր սաստիկ այրում,
Տղաներով փչանք ձորը,
Լող տվեցինք գետի ջրում:
Միայն Սեթը մոտիկ չեկավ,
Շորերն հանեց, էլի հագավ:
Ասում էր թե՝
— Գետն ի՞նչ է որ,
Ա՛յ, լիներ լիճ կամ ծով անտակ,
Որ սուզվեի մինչև հատակ,
Դուրս բերեի բռով գոհար,
Թե չէ այստեղ ի՞նչ լողանալ:—
Տղերքը, թե.— Որտեղի՞ց լիճ,
Ջուրը՝ ջուր է, մտիր, ոչի՞նչ:—
Երբ Սեթն ուրիշ ելք չգտավ,
Շորերն հանեց, գետը մտավ:
— Այս ինչքա՞ն է սուզված մնում:
Գոհարներ է գուցե հանում:—
Բայց մեկ էլ ինչ՝ ջուրը եռաց,
Սեթը ելավ բերանը բաց:
Ջուր կուլ տալով ղլղլացրեց,
Ինչ-որ բառեր բլբլացրեց:
Հենց որ տեսանք խղորդ Սեթը
Պիտի խմի ամբողջ գետը,
Հարայ տալով ջուրը մտանք,
Քաշ տվեցինք նրան գետափ,
Ջուր քամեցինք հինգ դույլի չափ,



Ուշքի եկավ երբ որ մի քիչ,
Իր գլուխն էր գովում նորից.
— Ծովում լինեեր, որ լող տայի
Ու սուզվեի ես ժամերով:
Թե չէ գետում ի՞նչ իմանամ՝
Քթո՞վ շնչել, թե՞ բերանով:

ջուր փայլում էր փոքրիկ էլեկտրական լամպի պես...

— Մինասի՜կ, Մինասի՜կ,— կանչում էին տնեցիները:

Մինասիկը չկար:

— Երեխան ո՞ւր կորավ: Մինասի՜կ...

Վերջապես գտան. մուշ-մուշ քնել էին իրար կողքի երկու ընկեր՝ Մինասիկը և ուլիկը:

Հայրը գրկած բարձրացրեց նրան: Մինասիկը մատներով պինդ կառչել էր Եվգիրի մազերից: Երակում միայնակ էին ինքն ու Եվգիրը, մութ էր, անցնում էին ձորով, վախենում էր ինքը:

Հոր գրկում Մինասիկը բացեց աչքերը, նայեց Եվգիրին: Եվգիրը նայեց նրան:

— Այժմ աշխարհի բոլոր ազգերն ունեն և՛ գիր, և՛ գրականություն,— շշնջաց Մինասիկը:

Հայրը ոչինչ չհասկացավ:

— Ի՞նչ, Մինասի՛կ ջան,— հարցրեց նա:

— Հինդուկուշի լեռները, հայրի՛կ, ձգված են Աֆղանստանից մինչև՞...— Մինասիկը ժպտաց ու նորից քնեց:



# Ջութակահարը

Ե. ԳԻԼԵ-ԲՐԱՆԴՍ

*(Գերմանացի բանաստեղծ)*

Աշխարհում կար ուրախ մի մարդ,
Շատ էր սիրում կատակ,
Թափառում էր երկրից երկիր,
Ձեռքին՝ մի հին ջութակ:

Նվագում էր ամբողջ օրը
Այդ երաժիշտն անտուն,
Պարում էին ջահել ու ծեր՝
Թողած և՛ գործ, և՛ տուն:

Դերձակի հետ մի ծեր հացթուխ
Պար էր բռնում կվարթ,
Ցատկոտում էր անկողնու մեջ
Հիվանդ պառկած մի մարդ:

Թռչում էին իրար գրկած
Մի հավ ու մի աղվես,
Պարում էին՝ փողոցն ընկած,
Մի սագ ու մի բվեճ:

Ու ձգվում էր ամենուրեք
Մի ցնծալի շուրջպար.
Ջրհորներից ջուրն էր ելնում,
Ծածկում դաշտ ու անտառ:

## ՄՈՒՏԼԻԿ ՈՐՍՈՐԴԱՆԻ ԵՂԲԱՅՐԸ

ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ

Հեռո՜ւ, շա՜տ հեռու տեղից եմ գալիս: Որտեղ լեռ ու ձոր էր՝ կուզեկուզ էի գալիս, որտեղ դուզ ու դաշտ էր՝ դիք-դիք էի գալիս:

Էսպես եկա՜, եկա՜, Մասիս սարի վերին լանջերին հասա: Էստեղ էր, որ մեկ էլ ի՞նչ տեսա... Մի մեծ ուղտ ձորից ձոր էր վազում, կիրճից կիրճ էր թռչում: Ուղտ մի ասի, մի հրեղեն-թևավոր:

Ընկա էս ուղտի ետևից, էնքան հալածեցի, մինչև մի ծերպի վրա հասա, բռնեցի, տեղնուտեղը չոքեցրի, առանց մեխի ու առանց մուրճի պայտեցի, փափախս թամբ շինեցի, հեծա:

Սրան էսպես ձի արած՝ քշեցի՜, քշեցի՜, մեկ էլ տեսնեմ՝ սկսեց կաղին տալ: Դու մի ասի՝ պայտելու ժամանակ մեխը խորն է գնացել:

Է՜հ, ինչի՞ս էր պետք կաղ ուղտը: Թուրս հանեցի ու զարկեցի: Որ զարկեցի՝ երկայնքով մեկ եղավ ճիշտ երկու կես: Առաջս կանգնեցին երկու ուղտ: Կատաղության մեջ սրանց էլ լայնքով թրատեցի: Ամեն մեկը երկու կես եղավ, դարձան չորս ուղտ: Էդպիսով ունեցա մի լավ քարավան:

Նառին հեծա ու առաջ քշեցի:

Զրը՜նգ-հա-զրը՜նգ, ծլը՜նգ-հա-ծլը՜նգ, էդպես կաղին տալով, եկանք հասանք մի քաղաք:

Էս քաղաքում մեծ տոնավաճառ էր: Ով ասես բան էր ծախում, ով ասես բան էր առնում: Ես ի՞նչ ծախեմ, ի՞նչ առնեմ... Քարավանս մի պարսիկ շահզադեի ծախեցի: Ամեն մի ուղտին մի գրոշ տվեց:

Էս չորս գրոշը բռանս մեջ խաղացնելով՝ տոնավաճառի մի ծայրից մյուսն անցա: Ինչ ասես, որ չէին ծախում էստեղ. փղի մորթի ու այծի բուրդ, ուղտի կոտոշ ու ձիու կարագ, եզան պանիր ու ծտի մածուն, քաղցր ջուր, խնձորի պոչ, տանձի կորիզ... Էհ, ո՞ր մեկն ասեմ, մնացածն էլ դուք հիշեցեք:

Դես նայեցի, դեն նայեցի, մի նախշուն, ծոպավոր ու փնջավոր խուրջին առա: Սրան տվի մի գրոշ: Մի գրոշ էլ տվի՝ երկու հատիկ կորեկ առա, խուրջինիս զույգ աչքը լցրի. ամեն հատիկը՝ աչքերից մեկի մեջ: Մի քիչ էլ ման եկա, մի սրած մանգաղ առա ու մի հատ էլ ժանգոտած խոփ: Ամեն մեկը՝ մի գրոշով:

Առածս ապրանքը շալակեցի ու ճամփա ընկա դեպի մեր գյուղը:

Եկա՜, եկա՜, Արաքսի ափը հասա: Հոգնած էի. նստեցի, ոտներս սառը ջրի մեջ թաթախեցի, հանգըստացա: Ուզում եմ տրեխներս հագնեմ՝ չկան: Դես տրեխ, դեն տրեխ, տեսնեմ՝ ջուրն են մտել դեպի մյուս ափն են լողում: Ափ ելան թե չէ՝ դարձան մի-մի սև եզ: Մեջքները արևի տակ պսպղում են, շողքը ետ արևին տալիս: Բեռներս շալակած՝ ցատկեցի, ես էլ մյուս ափն անցա: Էն ժանգոտ գութանը սրանց լծեցի: Լծեցի թե չէ՝ սկսեցին խոպանը վարել:

— Հո՜, վարե՛ք, ձե՜զ մատաղ, խո՜րը վարեք... Հո՜, ձեր սև ջանի՜ն մատաղ վարեք, հո՜, խոպանը կանաչի... Հո՜-հո՜-հո՜...

Որ վարեցինք պրծանք՝ խուրջինս առա ու սկսեցի կորեկս ցանել: Մի կողմից ցանում եմ, մյուս կողմից քրտինքը ճակատիցս անձրևի պես թափվում է ու արտս ջրում:

Ցանքսը որ վերջացրի, տեսնեմ՝ եզներս նորից տրեխ են դարձել: Մնկեցի հագա, ուզում եմ գնալ, ետևիցս կամաց խշշոցի ձայն լսեցի: Ետ նայեցի ու



Միծաղում էր այդ մարդն ուրախ
Ու հրճվալից ժպտում,
Մեկ էլ տեսար՝ ջութակն առնում
Մի անկյուն էր նետում:

Եվ իջնում էր ամենուրեք
Ծանր լռությունը.
Մարդիկ չէին կարող գտնել
Իրենց բակն ու տունը:

Հին ափերը որոնում էր
Հունից ելած գետը,
Աիեղ կայծակն ամպերի մեջ
Փնտրում էր իր նետը:



Թափառում էր առանց հավի
Գոռող աքաղաղը,
Վառեկները չէին հիշում
Իրենց ուրախ խաղը:

Կորցրել էր արևը վառ
Կանաչ դաշտն ու արտը,
Բայց ժպտում էր ուրախ-զվարթ
Կատակասեր մարդը:

Այո՛, մի լավ մարդ է եղել,
Շատ է սիրել կատակ,
Թափառել է երկրից երկիր,
Ձեռքին՝ մի հին ջութակ:



Փոխադրություն՝ ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԻ

# ԵՐԿՐԱԳՈՐԾ ՄՈՒՃՈՒՃԻԿԸ

Նկ. ՀԱՄԼԵՏ ՈՒԴՈՒՄՅԱՆԻ

ի՞նչ տեսա... Տեսա՝ արտս ծլում է: Ա՜յ թե տեսարան էր. քո աչքով տեսնում ես, թե ոնց արտդ ծլում է: Ծլելու հետ խշշոցն էլ ուժեղանում է և ուժեղանում:

Էդպես՝ ծլեց-ծլեց, կանաչեց-կանաչեց, հասավ-հասունացավ, լցվեց-ծանրացավ, դեղնեց-կարմրեց, ոնց որ անապատը կարմիր մայրամուտին: Արտ եմ ասել է՜... Մտա մեջը, ինձ կորցրի. էնքան որ հասկը բարձր էր ու խիտ:

Մտածեցի, թե էլ ո՞ւմ եմ սպասում, մանգաղս հանեցի, սկսեցի հնձել:

Հնձեցի պրծա, հետո կորեկս հավաքեցի, հավաքեցի, սարի պես կիտեցի: Հենց էն է, ուզում էի մի քիչ նստեմ, շունչ քաշեմ, ինչ-որ տեղից մի մեծ մորեխ դուրս թռավ: Թռավ ու կիտուկիս մեջտեղում տապ կացավ:

Մորեխ մի ասի, մի արծի՜վ ասա, էնքա՜ն մեծ էր ու զորեղ: Աչքերից կրակ էր կայծակում, ինքն էլ էնպես էր հևում, ոնց որ դարբնոցի փուքսը:

— Հո՛պ,— ասեցի ու փափախս մորեխի վրա շպրտեցի, որ բռնեմ:

Տեսնեմ, ի՞նչ տեսնեմ, որ լավ լինի... Տեսնեմ՝ փափախս երկու կես եղավ, տեղնուտեղը մի զույգ կամ դարձավ, լծվեց մորեխին:

— Ա՜յ լավ բան,— ասի:

Ասի ու չախմախիս քարը հանեցի: Հանեցի ու մատներովս կայծքարը փշրեցի: Կտորները կամատակերի փոսորակներում պնդացրի: Պնդացրի ու սկսեցինք կալսել:

Ըս մորեխս՝ ամեն թևը մի կանգուն ու կես, ոնց որ մի թևավոր նժույգ: Կալի վրայով կլոր-կլոր սլանում է. ես էլ մի ոտքս՝ մի կամին, մյուս ոտքս՝ էն մի կամին, գոտիս էլ մտրակ արած, քշում եմ սրան, ո՜նց եմ քշում: Կալսեցի՜նք, կալսեցի՜նք: Մորեխի պնչերից էլ էնպիսի քամի է ելնում, որ տեղնուտեղը դարմանը կալատեղից դուրս է լցվում, հատիկն էլ՝ կալի մեջտեղում կիտվում: Ամեն բան էնպես, ոնց որ պետքն է:

Էդպես, կալը կալսեցինք, դարմանը քամուն տվինք, հատիկը վեր թափեցինք:

Էլ չերկարացնեմ:

Լծկան մորեխիս արձակեցի, բաց թողի, կամերս նորից փափախ դարձան: Փափախս գլխիս դրի, գոտիս մեջքիս կապեցի, խուրջինս առա ու սկսեցի հատիկը մեջը լցնել: Համ խուրջինս եմ լցնում, համ ուտում եմ:

Է՜, ծով բերք... երկու աչքով մի խուրջին ու մի անոթի բերան. ինչքա՞ն լցնես, որ վերջանա, ինչքա՞ն ուտես, որ կշտանաս:

Տեսա, ոչ վերջանալ կա, ոչ կշտանալ...

Ինչ որ տեղավորվեց՝ տեղավորվեց, ինչքան որ ատամ ունեմ՝ էդքան փութ կերա, հետո խուրջինս շալակեցի, մեր գյուղի ճամփան բռնեցի: Տեղ հասա: Գնացի ջրաղաց: Խուրջինս տվեցի ջրաղացպանին, ասի.

— Հատիկի կեսը՝ քեզ, կեսը՝ ինձ:

Հրեն երեք օր է, աղում է, չի վերջանում:

Չեք հավատում, գնացեք ջրաղաց, ձեր աչքով տեսեք:

Ջրաղացպանին էլ պատվիրել եմ, որ հարցնողին կորեկի բաղարջ հյուրասիրի...

# ԶՐՈՒՅՑ ԶՐՈՒՅՑԻ ՄԱՍԻՆ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

## ՇԱՏԱԽՈՍՆԵՐԻ ՑԵՂԸ

Մի անգամ Սոկրատի մոտ մի նոր աշակերտ են բերում: Երիտասարդը այրվում էր պերճախոսության արվեստին տիրապետելու ցանկությամբ: Հանուն դրա նա դժվար ճանապարհ էր կտրել մինչև Աթենք: Սակայն, մի քանի րոպե խոսելուց հետո, ուսուցման համար Սոկրատը կրկնակի գին պահանջեց նրանից: Ինչո՞ւ: Այս նույն հարցը տվեց նրան աշակերտը:

— Այն պատճառով, որ ստիպված պետք է լինեմ երկու գիտություն ուսուցանել քեզ,— պատասխանեց փիլիսոփան,— ոչ միայն խոսելու գիտությունը, այլև լռելու:

Շատախոս մարդկանց մասին կարմանքով և հեգնանքով է խոսում հին հունական պատմաբան Թեոֆրաստոսը. «Շատախոսությունը ձանձրալի խոսակցություն է, երկարատև և անմիտ խոսակցություն: Շատախոս մարդը նըստում է որևէ մեկի մոտ, ում չի ճանաչում, և սկսում է գովել իր կնոջը, կամ պատմում է անցած գիշերվա երազը, կամ էլ նկարագրում կերած ճաշի տեսակները: Երբ անցնում է իր գործերին, հայտնում է, որ երիտասարդ սերունդը չունի ավագ սերնդի վարքագիծը, որ ցորենի գինն ընկել է, որ քաղաքում շատ օտարերկրացիներ կան, որ նավերը կարող են ծով դուրս գալ Դիոնիսիոսի տոներից հետո: Նա հայտնում է, թե ինչ են խոսում հասարակական համաժողովում և նույնիսկ պատմում է այն ճառերը, որ ինքը պետք է արտասանի, եթե համաժողովի անդամ դառնա»:

Սա գրվել է 2200 տարի առաջ: Այդ ժամանակից ի վեր պատմական հասարակարգերը փոխարինել են միմյանց, հզոր կայսրություններ են ծնվել ու կորել անհետ, ինչպես ծուխը՝ երկնքում, կատարվել են խոշորագույն հեղաշրջումներ հասարակության ու գիտության մեջ, և միայն մարդկանց այս ցեղն է մնացել անփոփոխ: «Շաղակրատը ջանում է սիրել տալ իրեն և միայն ատելություն է վաստակում, ջանում է ծառայություն մատուցել և դառնում է ձանձրալի, ուզում է կարմացնել, բայց դառնում է ծիծաղելի»: Ավա՜ղ, Պլուտարքոսի այս խոսքը կարող է ասվել և այսօր:

«Չի կարելի կրույցին վերաբերվել սեփական կալվածքի պես, որից իրավունք ունես դուրս անելու ուրիշին,— գրում է Կիկերոնը:— Ընդհակառակը, պետք է աշխատել, որ ամեն մեկը իր հերթն ունենա զրույցի մեջ»:

1717 թվականին Պետրոս I-ի կարգադրությամբ Ռուսաստանում լույս է տեսնում «Շիտակ հայելի երիտասարդ հասակի համար, կամ վարվեցողության ցուցումներ՝ հավաքված տարբեր հեղինակներից» գիրքը: Այս գրքում սրամտորեն հիմնավորվում է խոսքի մեջ կուսապ լինելու հանգամանքը. «Բնությունը մեկ տվել է մի բերան,— կարդում ենք գրքում,— իսկ ականջ՝ երկուսը, դրանով իսկ ցույց տալով, որ ավելի հաճելի պիտի լինի լսելը, քան խոսելը»:

Շաղակրատների մի հատուկ տեսակ կա բոլոր ժամանակներում, որ անեկդոտների սիրահար է: Սովորաբար այդ մարդիկ, որ շատ կուզեին հասարակության ոգին լինել, բայց չեն կարողանում խոսակցությունը հետաքրքիր դարձնել բոլորի համար, անկարող լինելով տիրապետել զրույցի արվեստին, գործի են դնում կրաղեցնելու կաղապարված ձևերը: Հիշենք Ն. Բուալոյի թևավոր խոսքը. «Անեկդոտներն այն մարդկանց սրամտություններն են, ովքեր չունեն իրենց սեփականը»:

Դուք երևի լսել եք «խուլ ցախաքլոր» արտահայտությունը: Ինչո՞ւ են այդպես ասում: Չէ՞ որ ցախաքլորը կգայուն և կգույշ թռչուն է: Պարզվում է, որ գարնանը, երբ ցախաքլորներն սկըսում են ձայնել, նրանք սեփական ձայնից բացի ոչինչ չեն լսում: Այդպիսի ցախաքլորի կարելի է մոտենալ ընդհուպ և վայր գցել մի կրակոցով: Այսպես է հատուցում ինքնասիրահարված այս թռչունը իր թույլության համար:

Ինչ վերաբերում է նման արատ ունեցող մարդուն, ապա ի տարբերություն թռչունի, հատուցում է ոչ թե ինքը, այլ՝ շրջապատը: Շաղակրատների բազում տարատեսակների մեջ ամենից վտանգավորը ինքնասիրահարված շաղակրատներն են: Սքանչանալով սեփական անձով, ականջ դնելով միայն սեփական ձայնի մեղեդուն, նրանք հիշյալ ցախաքլորների նըման, բոլորովին դադարում են տեսնել և լսել շրջապատի մարդկանց:

Չեխովը, այդ արտակարգ մեղմ ու դաստիարակված մարդը, հաճախ էր դառնում պնդերես շաղակրատների զոհը: Նման անքաղաքավարի մի այցելուի մասին նա գանգատվել է Կուպրինին: Պարզվում է, որ նրա հեռավոր ծանոթներից մեկը ուներ այսպիսի սովորություն. Յալթա գալուն պես ներկայանալ Անտոն Պավլովիչին: «Նա նստում է առավոտից մինչև ճաշ,— գանգատվում է Չեխովը:—

Սկիզբը՝ «Պիոներ» № 6-ում:




ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Մկների հայտնի ժողովից հետո
Տարիներ անցան:
Մկները հայտնի այն ճառասանին
Կանգնեցրին արձան:

Կատուն, իհարկե, կատու էր դարձյալ
Խեղճ մկասպանում,
Կատուն մկների ճառ ու արձանից
Բան չէր հասկանում:

## Ամռան շոգը



ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՈՐՋՅԱՆ

Արա՛մ, դու ա՛մպ նկարիր,
Որ հով լինի ճամբարում,
Ու երբ փնի փրիկուն,
Աստղեր փնեն երկնքում:

Նափի՛կ, դու ծա՛ռ նկարիր,
Նորից խաղանք պահմտոց,
Սուրի՛կ, խարո՛ւյկ նկարիր,
Որ ունենա մի մեծ բոց:

Սաթի՛կ, սարե՛ր նկարիր,
Նրանց կանաչ հագցնենք,
Վարուժի՛կ, ջո՛ւր նկարիր,
Ամռան շոգը հանգցնենք:

# Ա Յ Ծ Յ Ա Մ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Այս խոտաճարակին ասում են նաև եղնիկ կամ կըխտար: Ի՞նչ կենդանի է դա. մոտիկից ծանոթանանք մեկին:

...Մեր Աճարկուտ կոչված անտառի վերին եզրին շները մի մայր եղնիկ փախցրին ու հաչելով ընկան հետևից՝ ո՞նց են հալածում խեղճ կենդանուն: Իսկ նա չէր էլ ուզում հեռանալ այն թփերից, որտեղից նրան դուրս բերին շները: Շուտ-շուտ կանգնում էր, ետ նայում ու դունչը առաջ մեկնելով՝ մկկում:

Ես ու իմ ընկեր Գրիգորը նշանակալից իրար նայեցինք ու վազեցինք դեպի թփերը. հասկացել էինք, որ մայր եղնիկը մի շատ կարևոր բան է թողել այնտեղ... Ձեռքերով վգուշությամբ ետ տարանք ճյուղերը, խուզարկեցինք նրանց արանքները, ոչինչ չկար:

— Բա որտե՞ղ կլինի,—ինքն իրեն հարցրեց Գրիգորը տարակուսած:

Շարունակեցինք մեր եռանդուն խուզարկությունը: Մի թփի խորքում փայտի կտորի նման մի բան երևաց. թաղվել էր անցյալ տարվա փտած տերևների մեջ և նրանց նման խալեր ուներ իր մեջքին: Սաղարթների պատռվածքներից հունիսի արևի շողերը տեղ-տեղ ընկել էին վրան, շրջապատին: Քամուց երերում էին ճյուղերը, և արևի շողերը ճերմակ խալերի նման խաղում էին չալ գետնին: Մորթու վրա էլ հենց ճերմակ խալեր էին ցրված: Ոտքերն ու ականջները ծալած, գլուխը թաքցրած՝ իր մորթու պաշտպանական գույնով այնպես էր ձուլվել շրջապատի այդ չալ գույներին, որ եթե ուշադիր չնայեի՝ չէի հասկանա, որ կենդանի արարած է: Տես ո՞նց է սուսմեռուկ տվել: Բայց արդեն գլխի եմ ընկել, որ եղնիկի ձագ է:

---

ճաշին մի կես ժամով գնում է իր հյուրանոցը և հետո նորից վերադառնում ու նստում մինչև կես գիշեր և անվերջ խոսում է. խոսո՛ւմ... Եվ այսպես ամեն օր»:

Անշուշտ ամեն մեկը իր սեփական կյանքից հիշում է դեպք, երբ ինչ-որ մեկը իր շատախոսությամբ սրտնեղություն է պատճառել իրեն: Բայց ահա թե ինչն է տարօրինակ, չգիտես ինչու ոչ մեկը չի մտաբերում, թե երբ է նման դերում եղել ինքը: Զուր չէ, որ շաղակրատը, կամ ուղղակի աննրբանկատ մարդը, երանելի անգիտության մեջ, չի գիտակցում, թե ինչ բեռ է ինքը շրջապատի համար: Որպեսզի օգնած փնենք մի քիչ կողքից դիտելու ինքներս մեզ (որ հաճախ փնում է շատ տեղին), մենք կուզեինք խոսել հարցի մյուս կողմի մասին, արդեն ասված խոսքի ոչ թե քանակի, այլ որակի մասին: Այլ խոսքով՝ կրույցի նյութի, թեմայի մասին:

(Շարունակությունը՝ հաջորդ համարում)

— Գտա՛, Գրիգո՛ր, գտա՜,— գոչեցի ես ուրախացած, բայց իմ ձայնից կենդանին չշարժվեց: Վրա ընկանք, հանեցինք իր թաքստոցից, նոր միայն սկսեց դողացնել ու թպրտալ գրկիս մեջ:

Ոտքերը՝ երկար, վիզը՝ երկար, ականջները լոշտակ մի արարած էր դա:

— Մի տես որտե՛ղ է ծնել,—շրջապատին նայելով ասաց ընկերս:— Թփերը սարի արևկող դոշին են, ջուրն էլ մոտիկ, ախր սրանք համ տաքություն են ուզում, համ ջուր... դե գնանք:

— Բա բաց չթողնե՞նք,—անհամարձակ հարցրի ես:

— Բաց թողնենք, որ աղվեսն ուտի՛...

— Չէ՛, աղվեսին չեմ տա...տուն տանենք...

Մատս դնչին դեմ արի՝ բերանն առավ, ծծում է:

— Տանենք մեր Մարալին ծծեցնենք,—առաջարկեցի ես:

— Չէ՛, Մարալի կաթն ուժեղ է... դրանց իծի կաթով են պահում:

Նոր ծնած մի այծ բռնեցինք, ծծեց, փորը կլորիկացավ ու սկսեց ննջել:

Եղնիկի ձագը շատ շուտ ընտելացավ: Գառան նման հետևում էր մեր տնեցոնց, հարևանի երեխաներին և նրանց ձեռքից վերցնում ուտում էր ամեն ինչ՝ հաց, շաքար, խոտ, կերակուր՝ ինչ որ իրենք էին ուտում:

Աշնանը մազը փոխեց, ճերմակ խալերը վերացան, դարձավ գորշավուն ու այդպես էլ մնաց մինչև հաջորդ ամառնամուտ: Հունիսին փոխեց իր ծմեռային հանդերձանքը և դարձավ ոտքից-գլուխ շիկակարմիր. թիկունքը՝ մուգ, փորի տակը՝ բաց: Աշնանը նորից հագավ իր ծմեռային հագուստը. այս անգամ արդեն մուգ էր, թիկունքը թխավուն: Մորթին գեղեցիկ էր, փայլուն, բայց մազերը հատ-հատ էին և դյուրաբեկ:

Ժամանակ անցավ, ծմռանը գլխի վրա թմբիկներ առաջացան, որոնք գնալով մեծացան, երկարեցին ու հետզհետե ճյուղավորվեցին: Նրանք պատած էին թավշյա մորթով և կակուղ էին. մեջները ոսկրի փոխարեն արյուն էր: Նրանք գեղեցիկ էին, ամուր և եռաճյուղ: Մայիսին եղջյուրները պատող մորթու ծայրը պատռվեց և դուրս ցցվեցին արդեն ոսկրացած եղջյուրները, որ մոտ 20 սանտիմետր երկարության հասան (հասակավոր այծյամինը լինում է մինչև 28 սմ):

Ժամանակին մաքրվեցին ու ամրացան մեր այծյամի եղջյուրները. դրանք նրա զենքերն էին, որ պիտի գործադրեր ամռանը, երբ սկսվում է մենամարտը իր ցեղակիցների հետ:

Այդ ժամանակ նա անհանգիստ էր, օդը հոտոտում էր ու ձգտում դեպի անտառ, ուր իր նմաններն արդեն կռիվների մեջ էին:

Մենք ափսոսանքով ազատություն տվինք նրան, բայց ուրիշ ի՞նչ կարող էինք անել. մեր այծյամի մեջ հասունացել էր հայր դառնալու բնազդը...

Իրենց ամուր եղջյուրներով ամառվա ընթացքում կռվում են իրար հետ այծյամ-փեսացուները, ինչպես Կովկասի քաջերն էին կռվում Փարվանա գեղեցկուհու համար...

Կռիվները վերջանալուց հետո, զենքերն այլևս ավելորդ են: Եվ ահա աշնանը անտառում մենք ընկած եղջյուրներ էինք գտնում, այծյամի եղջյուրն ընկնում է ինքն իրեն, ինչպես հասունացած պտուղը՝ ծառից: Իսկ որն ամուր է, տերը խփում է ծառի բներին ու պոկում արմատից՝ առանց ցավ կզգալու: Եվ երբ ընկնում են եղջյուրները, արու այծյամը նմանվում է այն մարդուն, որին կինաթափ են արել. խեղճացել է, կզուլշ է, վախկոտ և կուրկ համարձակությունից ու վեհությունից:

Յուրաքանչյուր մայր այծյամ, մայիսի վերջերին և հունիսի սկզբներին անտառի թավուտում, մի թաքուն տեղ աշխարհ է բերում իր ձագերին: Ձագերը սովորաբար զույգ են լինում, երբեմն էլ՝ մեկը կամ երեքը: Նրանց թշնամիներն են՝ բազեն, արծիվը, աղվեսը, գայլը և այլ խոշոր գիշատիչներ: Պաշտպանվելու միջոցներն են՝ արտաքին տեսքով իրենց բնական միջավայրին նմանվելը, վտանգի դեպքում անշարժ մնալը: Հետո, մայրը մոտ մեկ ամիս նրանց թաքցրած է պահում անտառի թավուտում: Իսկ ամիսը լրանալուց հետո ձագն արդեն այնպես է վազում, որ շունն անգամ չի հասնում հետևից:

Այծյամը մեր բնության զարդն է: Այնքան գեղեցիկ է, այնքան անմեղություն են արտահայտում նրա սիրունիկ աչիկները, որ կյանքումս ոչ մի անգամ չեմ կրակել այդ կենդանու վրա: Չեմ կարողացել, ձեռքս չի բռնել... Եվ ես կուզենայի, որ մեր երկրում ոչ ոք չկրակի այծյամների վրա:

Իմ ծննդավայր Շամախյան գյուղի դիմաց անցյալ տարի եղնիկներ են տեսել սովխոզի անասունների հետ արածելիս. գյուղից երևում էին միշտ թավուտներում ծածուկ կյանք վարող այդ կենդանիները: Ուրեմն, այնտեղ ուր պաշտպանում են վայրի կենդանուն, նրա մեջ վստահություն է առաջ գալիս մարդու նկատմամբ:

Այնպես անենք, որ ոչ միայն Շամախյանի, այլև Լոռու, Ղափանի, Իջևանի հանդերում ապրող այծյամների մեջ վստահություն առաջանա դեպի մարդը:

Այդ բանին հասնելու համար ոչ միայն չպիտի անհանգստացնել նրանց, այլև պետք է անտառներում խոտ կուտակել ձմռան նրանց նեղ օրերի համար, նաև աղաքարեր պետք է դնել աղբյուրների մոտ, որ գան ջուրը խմեն, աղը լիզեն և իրենց կենդանական լեզվով օրհնեն իրենց բարիք անող մարդկանց:

# ԻՆՉՈՒ՞ Է ՎԱՐԱԶՆ ԱՊՐՈՒՄ ԾԱՄԲՈՒՏՆԵՐՈՒՄ

ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ



1

Ապրում էին վաղուց ի վեր
Մեր լեռներում բարձրանիստ
Ամեն տեսակ կենդանիներ՝
Իրար հետ հաշտ ու հանգիստ:

Ապրում էին, բայց որտեղի՞ց
Հանկարծ վարազն հայտնվեց,
Ու սկսվեց հենց այդ օրից
Բոլորի մեջ
Ոխ ու վեճ:

Վարազն ատեց ճերմակ ձիուն
Եվ ճառ ասաց նրա դեմ.
— Այ սատկե՛ս դու,
Գլխիդ գա ձյուն,
Կորի՛ր, որ քեզ չտեսնեմ:—

Ամբաստանեց եղջերուին
Ու սկսեց հալածել.
— Դու չես թողնում այստեղ ջրին
Եվ էշն հանգիստ արածել:—

Իսկ կապիկը մոտիկ ծառից
Այս որ տեսավ, ճղճղաց.
— Հե՜յ, շուտ հասե՛ք, գոմեշն ագահ,

# ԱՂՎԵՍԸ ՀԱՐԲՈՒԽ ՈՒՆԵՐ

Մի անգամ առյուծը էշին, գայլին և աղվեսին հրավիրում է իր մոտ կրույցի: Նրանք չորսով երկար շրջում են առյուծի պալատում: Գեղեցիկ պալատը հիացմունք է պատճառում հյուրերին, սակայն անկյուններում նրանք տեսնում են ոչխարների ոսկորներ, որոնց առյուծը խեղդոտել և պատառոտել էր: Այդ ոսկորներից անտանելի գարշահոտություն էր փչում: Երբ նրանց ծանոթությունը պալատի հետ ավարտվում է, առյուծը հարցնում է էշին.

— Դե, ուրեմն, ճի՜շտն ասա, քեզ դո՞ւր է գալիս իմ պալատը:

— Թագավո՛ր,— պատասխանում է էշը,— դուք անշուշտ ուզում եք ինձանից ճշմարտությունն իմանալ: Ձեր պալատը հոյակապ է, բայց օդը՝ ապականված:

— Օ՜հ դու, թշվա՛ռ, ես քեզ կպատժեմ, կրպարտի՛չ,— մռնչում է առյուծը,— և անմիջապես հարձակվելով էշի վրա՝ հոշոտում, մի անկյուն է նետում նրան: Հետո դիմելով գայլին՝ ասում է.

— Դու տեսա՞ր ինչպես պատժեցի կրպարտչին, հիմա պատասխանելու հերթը քոնն է:

— Թագավո՛ր, անկեղծ ասած, ձեր պալատը իս-



կապես որ իդեալական է, իսկ այնտեղի օդը շատ հաճելի:

— Օ՜հ, դու ողորմելի քծնող,— բացականչում է առյուծը,— և պատառոտելով գայլին, նրան էլ է մի անկյուն նետում:

Վերջում, խոսքը ուղղելով աղվեսին, հարցնում է.

— Հիմա, իմ սիրելի՛ փոքրիկ աղվես, գոնե դու ճշմարտությունն ասա: Դու անշուշտ կգացիր, թե ես ինչքան արդար եմ:

Խմե՜ց, մեկ ջուր չմնա՜ց։—
Վարազը, թե.— Ճիշտ ասացիր,
Ո՜վ դու կապիկ պատվական։
Այդ ծուռպոչին չսիրեցի,
Շատակեր է ու լակլան։—
Լռել էին էշն ու ջորին,
Լոկ ձին խոսեց անվարան.
— Մի՛ բամբասի կուր գոմեշին,
Շատ ենք սիրում մենք նրան։
Ի՞նչ է արել քեզ եղջերուն
Կամ թե ո՞ւմ է վնասել,
Դեռ ոչ ոքի նա իր օրում
Մի թթու խոսք չի ասել...



2

Բոլորը տեղում ահից քարացան,
Չին թողեց գնաց, հեռացավ անձայն։
Իսկ վարազն անխիղճ,
Հետևեց թաքուն, մոտեցավ քիչ-քիչ
Եվ ապա գետնին
Փռեց նրա դին։
Հետո հալածեց նա եղջերուին
Եվ այնքա՜ն ճնշեց ու հետապնդեց,



Այն ժամանակ, աղվեսը մի քանի անգամ իրար հետևից հափշի՜, հափշի՜, ուժեղ փռշտում է և պատասխանում.

— Թագավո՜ր, մի՞թե ես կարող եմ ձեզանից ճշմարտությունը թաքցնել։ Ձեր պալատը, իհարկե, հրաշալի է, սակայն հոտի մասին ես ոչինչ ասել չեմ կարող, քանի որ, հափշի՜, հափշի՜, հիվանդ եմ, հարբուխ ունեմ։

*Անգլ. թարգմ. Ս. ՋԻՐՋԻՐՅԱՆԻ*

Որ, հուսահատված, ականիվ կենդանին
Բարձր քարափից իրեն ցած նետեց։

3

Իսկ գոմեշին գտավ նստած,
Ջրերում ջինջ ու կենարար,
Հասավ վարկեց այնպես ուժգին,
Որ էլ տեղից վեր չկենար։
Հարվածն իրոք սաստիկ ծանր էր,
Բայց գոմեշը բարձրացավ վեր
Եվ ոսոխի դեմ իր խարդախ
Մենամարտի նետվեց անվախ։



4

Արյունլվա ու բկկտված
Վազեց վարազն առյուծի մոտ.
— Ո՜վ տեր արքա մեր ողորմած,
Արդարադատ, բարի, գթոտ։
Մի տե՛ս, թե ի՞նչ օրն է գցել
Ինձ գոմեշը այդ անպիտան...
Ես քեզ մոտ եմ ահա եկել,
Որ անես դատ ու դատաստան։
— Թե ուզում ես արդար վճիռ,—
Ասաց նրան առյուծն հպար,—
Վկաներին այստեղ կանչի՛ր,
Տեսնենք, թե ով է մեղավոր։

5

Այս որ լսեց վարազը չար,
Փախավ գնաց գլխիկոր,
Սարսափահար նա պահ մտավ
Շամբուտներում մութ ու խոր
Եվ այնտեղ էլ ընդմիշտ մնաց՝
Արդարության դեմ անկոր։

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*



# ԱՆՏԱՌԸ ՄԻ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՕՐԳԱՆԻԶՄ Է

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Շատերը կարծում են, թե ծառերի յուրաքանչյուր խոշոր կանգված անտառ է: Արհեստական տնկարկները հաճախ ուղղակի «անտառ» են անվանվում: Այդպես էլ ասում են. «Երևանի անտառ», «Քանաքեռի անտառ», «Նորքի անտառ» և այլն:

Մինչդեռ սրանք սխալ արտահայտություններ են: Անտառը, դա ծառերի, թփերի, խոտաբույսերի, կենդանիների, թռչունների մի օրգանական համախմբություն է, որտեղ յուրաքանչյուրն իր խիստ որոշակի դերն ունի և մեկն առանց մյուսի գոյություն ունենալ չի կարող:

Անտառի ընդհանուր կանգվածի ֆոնի վրա վեր են խոյանում այսպես կոչված առաջին շարահարկի ծառերը: Դրանք կաղնին, բոխին, հացենին, հաճարենին, թեղին, թխկին և այլ ծառերն են: Սրանց հիմնական «խնդիրն է» ստվեր ապահովել մյուս բույսերի համար, խոշոր, լայն սաղարթի տակ խոնավություն պահպանել և օգտագործել արեգակի ճառագայթների անմիջական էներգիան: Խոշոր թփերը և մանր ծառերը (արոսենի, թղկի թաթարական, սզնի, խնձորենի) զբաղեցնում են երկրորդ շարահարկը: Սրանք օգտագործում են այն լույսը, որ թափանցում է առաջին շարահարկի սաղարթի միջից, է՛լ ավելի են թանձրացնում ստվերը և սրանց սաղարթի տակ ապաստան են գտնում ավելի ստվերատար բույսերը: Թփատեսակները (տխլենի, իլենի, ցախակեռաս, ղժնիկ, բռնչի) զբաղեցնում են երրորդ շարահարկը: Դրանք սովորաբար խիստ ստվերատար են և հաջողությամբ են աճում նույնիսկ կիսախավարում: Վերջին շարահարկը խոտաբույսերն են, որոնք երբեմն հանդես են գալիս խոտային մի քանի շարահարկերով: Երբեմն, լուսավոր անտառներում հողի մակերեսը ծածկված է լինում մամուռի շերտով:

Տարբեր խմբերի այս բույսերը սերտ համագործակցում են մեկը մյուսի հետ: Նրանց արմատային սիստեմը հողի մեջ այնպես է տարածված, որ իրար երբեք չեն խանգարում, այլ՝ ընդհակառակը, նպաստում են մեկը մյուսի աճին: Օրինակ, կաղնու արմատների կողմից արտադրված հատուկ նյութերը սնունդ են հանդիսանում թղկու համար: Ահա թե ինչու թղկին իրեն չափազանց լավ է զգում կաղնու ներկայությամբ: Այդ հարեվանությունը ձեռնտու է նաև կաղնուն, որը իր հերթին օգտագործում է թղկու արմատների կողմից արտադրվող նյութերը:

Անտառում խոշոր ծառերը իրենց հզոր արմատներով հողի խոր շերտերից խոնավություն են վերցնում և բարձրացնելով վեր՝ խոնավացնում հողի վերին շերտերը: Դա հնարավորություն է տալիս խոտաբույսերին հաջողությամբ աճել ու զարգանալ: Իրենց հերթին խոտաբույսերը պահպանում են անտառին բնորոշ հողի վերին փափուկ շերտը, որը այլ պայմաններում ջրերի կողմից կքշվեր-կհեռացվեր և խոշոր ծառերի արմատները բացվելով կչորանային:

Բավական է կտրատել անտառի խոշոր ծառերը, և խոտաբույսերն իսկույն կչորանան խոնավության պակասից և ուժեղ այրվածքներ կստանան արեգակի անմիջական ճառագայթների ազդեցության տակ:

Թռչուններր ծառից-ծառ թռչելով, սընվում են պտուղներով ու հատապտուղներով: Ուտելով փափուկ, համեղ պտղամիսը, նրանք սերմերը տարածում են անտառով մեկ, նաև ոչնչացնում վնասակար միջատներին ու կրծողներին: Դա էլ փոխադարձ կապ է, պայմանավորվածություն մեկը մյուսով:

Անտառում բազմաթիվ միջատներ են ապրում: Նրանք սնվում են բույսերի տերևներով, պտուղներով, սերմերով և միաժամանակ մեծ ծառայություն են մատուցում բույսերին՝ փոշոտում են նրանց ծաղիկները, օժանդակում առատ պտղաբերությանը: Իսկ որոշ միջատներ, հողում բներ պատրաստելով, փխրեցնում են հողը, նպաստում ջրաթափանցելիությանը և օդաթափանցելիությանը: Որոշ սերմեր տարածվում են բացառապես միջատների միջոցով:

Միջատների մի ուրիշ խումբ, այսպես կոչված վնասատուները, մեծ վնաս են հասցնում անտառին, ոչնչացնելով տերևները, ցողունները, ծաղիկները, սերմերը, պտուղները, ծծելով բույսերի հյութը: Իսկ գիշատիչ և մակաբույծ միջատները ոչնչացնում են դրանց: Անտառը չի կարող գոյություն ունենալ առանց այդպիսի միջատների և թռչունների:

Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել, թե ինչպես անտառը հիվանդացել է, քայքայվել և սկսել ոչնչանալ թռչունների պակասելու հետևանքով:

Իսկ կարո՞ղ է արդյոք, անտառը գոյություն ունենալ առանց գազանների:

Խլուրդները, փորսուղները, աղվեսները և այլ կենդանիներ ոչնչացնում են մայիսյան բզեզի և այլ վնասակար միջատների թրթուրները: Աղվեսը օրական կարող է ոչնչացնել 30—40 մուկ: Սիբիրյան սոճու և կաղնու պտուղները մեծ տարածության վրա սփռվում են սկյուռների շնորհիվ:

Աշնանը բույսերը մերկանում են: Թափված տերևները հաստ շերտ են առաջացնում, որը տաք վերմակի պես պահպանում է հողը, ծածկում թափված սերմերը, նրանց համար խոնավություն է կուտակում: Աստիճանաբար փտելով՝ նրանք հողը հարստացնում են օրգանական նյութերով և սնունդ հանդիսանում բույսերի համար: Եթե ոչ ոք չի խախտում անտառի ամբողջականությունը, այսպես շարունակվում է տարիներ, դարեր:

Անտառն ունի իր սեփական մթնոլորտը, որն առաջանում է անտառային բուսականության փոխներգործության շնորհիվ և միաժամանակ որոշում է նրա կյանքի պայմանները: Անտառապատ վայրերում տեղումների քանակը դաշտավայրերի հետ համեմատած, ավելի շատ է, քանի որ անտառը միշտ խոնավություն է արձակում ջրային գոլորշիների ձևով: Անտառը միաժամանակ բարելավում է շրջապատի ջրային ռեժիմը: Անտառային շրջաններում երբեք ուժեղ հեղեղներ չեն լինում, քանի որ ինչքան էլ շատ անձրև գա, այն հավասարաչափ ներծծվում է անտառի փուխր և փափուկ հողաշերտերի մեջ:

Դարեր շարունակ աճելով կողք-կողքի, անտառային ծառերը, թփերը, խոտաբույսերը հարմարվել են մեկը մյուսին և այնպես «ընտելացել» իրար, որ առանց մեկի, մյուսը գոյություն ունենալ չի կարող: Այդ բույսերը միաժամանակ չեն հանդուրժում «կողմնակի անձանց»: Փորձեցեք անտառում մի նոր տեսակի բույս աճեցնել: Այն իսկույն կոչնչանա, քանի որ անկարող է դիմանալ «բնիկ» բույսերի մրցակցությանը:

Արհեստական «անտառներում» նման փոխադարձ կապ ու պայմանավորվածություն գոյություն չունի: Դրա հետևանքով մարդու խնամքը այստեղ մեծ անհրաժեշտություն է: Բավական է վերանա այդ խնամքը, և ծառերի մի մասը արագորեն կոչնչանա, իսկ մյուս մասը մի կերպ կպահպանի իր գոյությունը, անկարող լինելով դիմադրել շրջապատի անբարենպաստ պայմաններին: Էլ չենք խոսում այն մասին, որ կիսաանապատային ու տափաստանային շրջաններում առանց խնամքի ոչ մի ծառատեսակ աճել չի կարող:

# ԲՋՆԻ

ՎԱՐԱԶԴԱՏ
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Երբ ամառվա ամիսներին հանգստանում եք Ծաղկաձորի կամ Հանքավանի պիոներական ճամբարներում, բացի Ծաղկաձորից արժե տուրիստական արշավներ կազմակերպել դեպի Արզական, Բջնի, Մաքրավանք և Մեղրաձոր, ծանոթանալու համար հիշյալ բնակավայրերում կամ նրանց շրջակայքում գտնվող պատմա-ճարտարապետական հուշարձաններին: Եկեք այս անգամ ուղևորվենք դեպի հարավ ու ծանոթանանք Բջնիի ամրոցին:

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Բջնի գյուղը հիշատակվում է 5-րդ դարին վերաբերող հայկական մատենագրական աղբյուրներում: Հավանորեն բնակավայրի հետ միաժամանակ գոյություն է ունեցել նաև ամրոցը:

10-րդ դարի արձանագրություններում Բջնին անվանվում է քաղաք կամ բերդաքաղաք, որը Մազազ նահանգի հետ միասին, որպես տոհմական բաժնեկալվածք պատկանում էր Պահլավունիների իշխանական տոհմին: Բջնիի ամրոցը դառնալով տոհմի աթոռանիստը, ամրացվեց և կառուցապատվեց:

Պահլավունիների իշխանական տոհմի ներկայացուցիչների՝ մասնավորապես Վասակի և նրա որդի Գրիգոր Մագիստրոսի (որը առանձին աղբյուրներում կոչվում էր նաև «Բջնեցի) ժամանակ Բջնին ապրել է ամենամեծ վերելքը:

1021 թ. ամրոցը ենթարկվեց դեյլամիկների հարձակմանը, սակայն Վասակ Պահլավունու կողմից նրանք ետ մղվեցին և ջախջախվեցին: Վասակի մահից հետո ամրոցն անցավ նրա որդու՝ Գրիգոր Մագիստրոսի տիրապետության տակ, սակայն վերջինս պայմանավորվելով բյուզանդական կայսր Կոստանդին Մոնոմախի հետ, 1045 կամ 1046 թվականին Բյուզանդիային է հանձնում ամրոցը, փոխարենը ստանալով հողեր Հայաստանի հարավային մարզերում:

11-րդ դարի վերջերին, երբ Հայաստանն ընկավ սելջուկների տիրապետության տակ, վերջիններս գրավեցին նաև Բջնի ամրոցը և օգտագործեցին մինչև Զաքարյանների կողմից ետ գրավելը:

Մինչև 13-րդ դարի 50-ական թվականները ամրոցը մնաց Զաքարյանների ձեռքին և ծառայեց որպես աթոռանիստ Իվանե իշխանի որդի Ավագի համար:

Բջնիում գտնված 1358 տարեթվով արձանագրությունից կարելի է իմանալ, որ Մելիք Աշրաֆի ժամանակ Անի քաղաքի և Շիրակի մարզի հետ միատեղ ավերման ենթարկվեց նաև Բջնիի ամրոցը և, հավանորեն, այլևս չվերականգնվեց:

## ՏԵՂԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Բջնիի ամրոցը գտնվում է համանուն գյուղի արևելյան կողմում: Այստեղ, Հրազդան գետի աջ ափին խոյանում է մի ժայռաձերպ, որի տափարակ գագաթին կառուցվել է ամրոցը: 80—100 մետր և ավելի բարձրությամբ դիք կառիթափերը համարյա ամբողջ պարագծով, շրջափակելով ժայռաձերպը, լիովին բացառում էր պարիսպների կառուցման անհրաժեշտությունը: Վայրի տեղադրությունը թելադրում էր պաշտպանական պարիսպներ կառուցել միայն թշնամու ներթափանցման համար որոշ չափով մատչելի հյուսիսային և արևմտյան մասերում:

Սկսվելով սարի ստորոտից ոչ հեռու, ժայռը առաջ է ցցված հարավ՝ դեպի Հրազդան գետի խիստ լայնացող հովիտը, գերիշխելով շրջապատի վրա: Ամրոցը բաղկացած էր երկու մասից՝ ներքին և վերին: Այսպիսի կազմությունը պայմանավորված էր տեղանքով, որը ամրոցը կառուցողները հմտորեն օգտագործելով՝ ապահովել են նրա անառիկությունը:

Ժայռաձերպի գագաթը ունի ընդհանուր թեքություն հարավից-հյուսիս, և բնական կերպով բաժանված է երկու անհավասար՝ փոքր ու մեծ մասերի:



Փոքր մասի վրա, գագաթի հյուսիս-արևմտյան եզրով 1200—1500քմ. տարածությամբ և 10—15մ ավելի ցած՝ ամրոցի համեմատությամբ, գտնվում էր ներքին ամրոցը: Ժայռածերպի գագաթի մնացած մոտ 1,4 հեկտար տարածությունը գրավում էր վերին ամրոցը:

Ամրոցի ամբողջ հյուսիսային պարագիծը գրավող գլխավոր պաշտպանական պարիսպը (որն այժմ ըսկզլիորեն ավերված է) 120 մետր ընդհանուր երկարությամբ ընդգրկում էր ներքին և վերին ամրոցների ողջ հյուսիսային սահմանը: Արտաքին միակ դարբասով մտնում էին ներքին ամրոցը, իսկ այդտեղից մեկ ուրիշ դարբասով անցնում վերին ամրոցը:

Քանի որ ներքին ամրոցը հյուսիս-արևմտյան կողմից բնականորեն նվազ պաշտպանված էր (այս հատվածում կառիթափի փոխարեն միայն թեք լանջ է) անհրաժեշտություն է առաջացել այդ մասը ամրացնել մոտ 115մ. ընդհանուր երկարություն ունեցող պաշտպանական հզոր պարսպով, որից այժմ պահպանվել են որոշ հատվածներ: Տեղում դժվար չէ համոզվել, որ այդ պարիսպը անցյալում ժամանակ առ ժամանակ վերանորոգվել և ամրացվել է, կիսակլոր աշտարակներով արտաքին պարսպապատը (խնամքով շարված բազալտե քարերով՝ կրաշաղախի միջոցով) վերաբերում է Պահլավունիների շինարարական գործունեությանը և իր շինելակերպով հիշեցնում է Ամբերդի դղյակի պաշտպանական պարիսպները: Հետագայում, հավանորեն Զաքարյանների օրոք, պարիսպների առաջին գծից քիչ ետ, կառուցվել է մեկ ուրիշ պարիսպ:

Ամրոցի պաշարման դեպքում այնտեղից հնարավոր էր դուրս գալ ստորգետնյա անցքով (գաղտնուղով): Նրա սկիզբը գտնվում է արևմտյան պաշտպանական պարսպի հարավային ծայրից ոչ հեռու: Այնտեղ կարելի էր իջնել, անցնելով կամարային բացվածքով: Այդ անցքը, ի տարբերություն Ամբերդի ստորգետնյա անցքի, կառուցված է բազալտե ոչ մեծ քարերով, կրաշաղախով: Ստորգետնյա անցքը (1,2 մետր լայնությամբ և 1,6—1,8 մետր բարձրությամբ) թաղածածկ է:

Ամրոցին ջուր էր մատակարարվում ջրմուղի օգնությամբ, ամրոցից բարձր, սարալանջին գտնվող աղբյուրներից: Ջրմուղի մեկ ճյուղը, դատելով գյուղում գտնված կավե խողովակից, ջուր էր մատակարարում գյուղին, իսկ մյուսը՝ ամրոցին: Ժայռի գագաթին, հարավային վերջավորություններից ոչ հեռու, ամենաբարձր կետում, կառուցված էր կզալի տարողությամբ մի ջրամբար, որի մեջ, անտարակույս, ջուրը լցվում էր ինքնահոսով:

Ուղղանկյուն ջրամբարը, կառուցված բազալտե քարերով ու կրաշաղախով (որով և սվաղված էին նաև նրա ներքին պատերը), թաղածածկ էր:

Ամրոցի բարձունքում, բացի հիշատակված ջրամբարից և պաշտպանական պարիսպների մնացորդներից, պահպանվել է ուղղանկյուն մի շինություն՝ հավանորեն մատուռ, փլված թաղածածկով: Մյուս շինության ավերակները գտնվում են ամրոցի ամենաբարձր կետում, ջրամբարի և ենթադրյալ մատուռի միջև:

## ԳՅՈՒՂԻ ՄՅՈՒՍ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

Ամրոցը դիտելուց հետո, կարելի է ծանոթանալ Բջնիի նաև մյուս հուշարձաններին, որոնք գտնվում են գյուղի տարբեր մասերում: Ամրոցի արևելակողմում, մի փոքր ժայռապանգվածի վրա դուք կտեսնեք սուրբ Սարգիս կոչվող գողտրիկ եկեղեցին, 7-րդ դարին բնորոշ հորինվածքով ու պարզ ճարտարապետությամբ: Գյուղի կենտրոնի բարձրադիր մասում, սարալանջին, պարիսպներով շրջապատված մի տարածության վրա Բջնիի ս. Աստվածածին եկեղեցին է (1031թ.), որը կառուցել է տվել Գրիգոր Մագիստրոս (Պահլավունի) իշխանը: Եկեղեցու բակում գտնվում են 12—13-րդ դդ. վերաբերող բազմաթիվ գեղաքանդակ խաչքարեր:

Վերոհիշյալ եկեղեցուց դեպի հարավ-արևմուտք, 1—2 հարյուր մետր հեռավորությամբ, միանգամայն տարբեր հորինվածքի (սրահաձև, անգմբեթ) կիսավեր մի եկեղեցի կա, հավանաբար կառուցված 13-րդ դարում: Սրահից քիչ դեպի հարավ, գետնի վրա հավիվ նշմարելի են մնացորդները ուշ միջնադարյան մի շենքի, որ գյուղացիների ասելով բաղնիք է եղել:

Այսպիսով, պատմական Հայաստանի հնագույն բնակավայրերից մեկը՝ Բջնին հարուստ է միջնադարի բոլոր շրջաններին վերաբերող տարբեր բնույթի (աշխարհիկ, եկեղեցական) հուշարձաններով, որոնք պատմական և ճարտարապետական-գեղարվեստական առումով մեծ հետաքրքրություն են ներկայացնում:

---

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Վրեժ Վարդունի

* * *

Յոթը եղբայր են.
Նրանք հերթով են
Մեկ այցի գալիս,
Եվ մեկն իր հերթը
Մյուս եղբորը
Երբեք չի տալիս:

(Շաբաթվա օրերը)

* * *

Ցուրտը գալիս է
Նրան տուն տանում,

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

Մետաղի ջարդոն է, դեռ վագոնիկ չէ, վագոնիկ է դառնալու, ռելսերի վրայով վազող և ընդերքից քար ու ապար հանող վագոնիկ: Տղաներն ու աղջիկները մետաղի ջարդոն են հավաքում: Այդ մետաղը պիտի մնար անօգտագործելի ու կորչեր: Այդ մետաղը վաղը մի գործարանում կձուլեն, վագոնիկներ կպատրաստեն:

Լենինականի Հակոբ Հակոբյանի անվան դպրոցի պիոներական դրուժինայի անդամները իրենց այս նախաձեռնության մասին նամակով տեղեկացրին Արփա-Սևանի շինարարներին:

Նամակի պատասխանը չուշացավ.

«Արփա-Սևանի կառույցին օգնելու ձեր պարտքը մեկ տարով մոտեցնում և ոգևորում է: Դուք ձեր փոքրիկ ձեռքերով մեծ գործ եք կատարում: Բոլոր թունելագործների անունից խոսք եմ տալիս ձեր նվիրաբերած վագոնիկների վրա գրել ձեր՝ Ստեփան Շահումյանի անվան դրուժինայի գերազանցիկների անունները»:

Սրանք Ջերմուկի տեղամասի հատուկ շինարարական վարչության պետ, Լենինականի № 38 դպրոցի նախկին սան Վանիկ Թումանյանի խոսքերն են, ուղղված Հ. Հակոբյանի անվան դպրոցի աշակերտներին:

Դպրոցում ոգևորությունը կրկնապատկվեց: 50 տոննա մետաղ արդեն հանձնել են պետությանը: Անդորրագրերը խնամքով պահում են: Էլի են հավաքելու:

Նրանք հանրապետության բոլոր դպրոցներին կոչ են ուղղել: Նրանց խոսքը «Լսո՞ւմ եք մեկ...» վերնագրով տպագրվեց «Պիոներ կանչում»:

Նրանց կոչը շուտով արձագանք գտավ: Նախ ակտիվացան համաքաղաքացիները՝ Աբովյանի, Մուսայելյանի, Պուշկինի անվան դպրոցների աշակերտները: Ապա նամակներ եկան Ապարանի, Ախուրյանի շրջանների գյուղերից, Երևանից:

Նրանք մտադիր են արձակուրդներին խմբով գնալ Արփա-Սևան, մոտիկից ծանոթանալ գործին, նաև շինարարներին ներկայացնել իրենց երգն ու պարը:

Դպրոցի պիոներ-սենյակի պատերից մեկը շուտով պատվո տախտակ կդառնա: Այնտեղ փակցնելու են թունելագործների դիմանկարները, իրենց արժանավոր ընկերներից շատերին էլ տեղ կտան այնտեղ, նրանց կողքին:

Սենյակի մի անկյունում հավաքում են այն նյութերը, նամակները, նկարները, որ առնչվում է գործին: Վանիկ Թումանյանը նամակի հետ ուղարկել է թունելագործների աշխատանքային դրվագները պատկերող նկարներ: Նրանք իրենց մոտ պահում են նաև դրուժինայի և աշակերտների կողմից գրված նամակների կրկնօրինակները: Թանգարանի նման բան է ստացվում: Դպրոցի հետագա տարիների սաները կգան և դպրոցի պատմությունը կհարստացնեն իրենց գործերը պատկերող նոր նյութերով:

## ՎԱԳՈՆԻԿ Է ԴԱՌՆԱԼՈՒ

ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ

---

Իսկ նա ցրտին է
Սենյակից վանում:

(Վառարանը)

* * *

Գիշեր ու ցերեկ
Երբեք չի քնում,
Ուտում է կրակ,
Սառույց է ծնում:

(Սառնարանը)

* * *

Առանց լեզվի պատմում է,
Առանց թևի թռչում է,
Ուր ուղարկես՝ կգնա,
Այդ ի՞նչ հրաշք թռչուն է:

(Նամակը)

* * *

Բամբակի պես
Ճերմակ է,
Բամբակի պես
Փափուկ է,
Ինքը պաղ է,
Վրան՝ պաղ,
Տակը սակայն
Տաքուկ է:

(Ձյունը)

* * *

Քեզ հետ ապրում է
Մի անթև թռչուն,
Նա ամեն ինչից
Արագ է թռչում:

(Միտքը)

* * *

Կլոր բույն է,
Չունի դուռ,
Մեջը հուլունք
Կա մի բուռ:

(Նուռը)







# ԱՌՈՂՋ ՄԱՐՄՆՈՒՄ՝ ԱՌՈՂՋ ՄԻՏՔ

Հայաստանի պատկոմական կազմակերպությունը իր գոյության առաջին քայլերից զբաղվեց նաև պատանիների ունակությունները հայտնաբերելու և զարգացնելու գործով, մեծ նշանակություն տալով նրանց մտավոր ու ֆիզիկական ներդաշնակ դաստիարակությանը, ղեկավարվելով՝ «Առողջ մարմնում՝ առողջ միտք» սկզբունքով:

Բացի ֆիզկուլտուրայից, որը պարտադիր էր բոլոր պատկոմներիս համար, մեզանից ամեն մեկն ըստ իր ընդունակությունների կարող էր մասնակցել պատկոմական երգի, պարի, թատերական, նկարչական, գրական և այլ խմբակներին:

Պատկոմների էսթետիկական դաստիարակությանը մեծապես նպաստում էին մեր սիրելի ղեկավարի՝ Ստյոպա Մանուկյանի բազմակողմանի ընդունակությունները. նա և՛ պոետ էր, և՛ դրամատուրգ, և՛ երաժիշտ, հրաշալի մարդիկ: Ստյոպան կենդանի օրինակ էր մեզ համար, կախարդի նման հմայում էր ամենքիս իր հորինած «կարմիր հեքիաթ»-ներով: Նա հորինում էր նաև սպորտային գրավիչ խաղեր և ղեկավարում թատերական բեմադրությունները, քաջալերում, թևավորում էր մեզ:

Այդ շրջանում պատկոմ-բանաստեղծների մի ամբողջ խումբ էր ստեղծվել, բոլորս էլ ոտանավորներ էինք գրում, որոնցից տասնյակները հրատարակվեցին «Պատկոմ» ամսագրի էջերում: Այդ օրերին լայն տարածում էին գտել Չարենցի, Մայակովսկու, Վշտունու, Ժարովի, Հակոբ Հակոբյանի, Շուշանիկ Կուրղինյանի, Աղա Նեգրիի բոցաշունչ ստեղծագործությունները, որոնք մեծ հափշտակությամբ ընթերցում և արտասանում էինք մեր հանդեսներին: Պատկոմական ակումբում (նախկին Աբովյանի անվան դպրոցի դահլիճը) տեղի էին ունենում մեր երեկույթները, թատերական ներկայացումները, պարահանդեսները: Մեզ համար ելույթներ էին ունենում նաև պրոֆեսիոնալ արվեստագետները՝ երգչուհի Արուս Բաբայանը, կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը՝ իր քառաձայն երգչախմբով, որի մեջ քիչ չէին պատկոմները, Թիֆլիսի օպերայի և բալետի արտիստները, քամանչիստ Օգանիկաշվիլին, պարարվեստի վարպետ Վահրամ Արիստակեսյանը, կոմպոզիտոր Վահան Ումրշատը և ուրիշներ: Ումրշատը պատկոմների ուժերով բեմադրեց իր մանկական օպերետը՝ «Ուլիկ»-ը, որը մասսայականացվեց ամբողջ հանրապետությունում:

Այդ ելույթներն անջնջելի տպավորություն թողեցին և մեծ դեր խաղացին մեր էսթետիկական ճաշակի զարգացման գործում:

Առանձնապես բեղմնավոր գործունեություն ունեցավ պատկոմական թատերական խումբը, որի ակտիվ ղեկավար անդամներից էին հետագայում կինոռեժիսոր Վիլյամ Հայկազյանը, Սունդուկյանի անվան պետական թատրոնի դերասան Դասոյանը, Աշոտ Ներսիսյանը, դերասաններ Հրանտ Մանվելյանը, Գրիգոր Մարգարյանը: Մենք խաղում էինք Շիլլերի «Ավա-



# ՉՈՒԿՈՏԿԱ

Պատից կախված է Սովետական Միության քարտեզը: Մոտեցեք նրան:

Գտնենք նրա ծայր հյուսիս-արևելքում այն թերակղզին, որը մոտենում է Ալյասկային: Դա Չուկոտյան թերակղզին է: Նրա ափերը ողողում են Բերինգի և Չուկոտյան ծովերը: Ջրային այն տարածությունը, որը կապում է այս ծովերը իրար, կոչվում է Բերինգի նեղուց: Այդ անունը տրվել է նրան ի պատիվ Հեռավոր Արևելքի նշանավոր ուսումնասիրող Վիտուս Բերինգի: Այս նեղուցը բաժանում է Ասիան Ամերիկայից: Այս նեղուցում կան երկու ժայռոտ ոչ մեծ կղզիներ: Նրանցից մեկը կոչվում է Մեծ Դիոմիդ, իսկ մյուսը՝ Փոքր Դիոմիդ: Մեծ Դիոմիդի վրա ծածանվում է սովետական պետական դրոշակը, իսկ մյուսի՝ Փոքր Դիոմիդի վրա՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներինը: Օրը ծայր է առնում այս երկու կղզիների սահմանագծից, այստեղով է անցնում օրվա փոփոխման միջազգային գիծը: Այն կտրում է Խաղաղ օվկիանոսը: Այս գծից էլ սկսվում է մեր մոլորակի վրա ամեն մի օրացուցային նոր օրը, ինչպես նաև նոր տարին:

Եթե ուշադրությամբ նայենք աշխարհի քաղաքական քարտեզին, ապա կտեսնենք Խաղաղ օվկիանոսում հյուսիսից հարավ 180 աստիճանի միջօրեականի շուրջը անցնում է մի գիծ, որի վրա գրված է. «Ամսաթվի փոփոխման միջազգային դեմարկացիոն գիծ»:

Այս պայմանական գիծը, որը կոչվում է «Ամսաթվի փոփոխման սահման», սահմանազատում է իրարից երկու հարևան օրերը: Այս գծից, ինչպես ասվեց, սկսվում է նոր օրն ու նոր տարվա հաշիվը: Այսպիսով նոր օրը սկսվում է նախ Չուկոտյան թերակղզու ծայր հյուսիսում՝ Բերինգի նեղուցում: Ապա, դրանից հետո, ինչպես ասում են, նոր օր է բացվում դեպի արևմուտք ընկած վայրերում՝ Անադիրում, Վլադիվոստոկում, Նովոսիբիրսկում, Օմսկում, Սվերդլովսկում, Երևանում, Մոսկվայում և այլուր:

## Էջեր Հայաստանի պիոներիայի պատմությունից



պակները»․ Շիրվանզադեի «Նամուս»-ը, Մ. Մանվելյանի «Հեքիաթ»-ը, «Դեպի փայլող լույսը», «Ուշ է», Պարոնյանի «Մեծապատիվ մուրացկաններ»-ը, Էմին Տեր-Գրիգորյանի «Խեչոյի թուպը» և այլն:

Թատերական խմբակի աշխատանքներին մեծ օգնություն էին ցույց տալիս պետական թատրոնի ռեժիսոր Լևոն Քալանթարը և գրող-դերասան՝ Միքայել Մանվելյանը:

Ի դեպ նշենք, որ մեր պատկոմական թատրոնը պատանի հանդիսատեսի թատրոնի նախատիպն էր:

Թատերական ներկայացումներով ու երեկույթներով հանդես էինք գալիս շրջաններում, քաղաքի դպրոցներում, անգամ պետական թատրոնի բեմում:

Համերգների և մեր պիոներական երգչախմբի կազմակերպիչն ու ղեկավարն էր ժողովրդական արտիստ, կոմպոզիտոր Թաթուլ Ալթունյանը: Պատկոմների շարքերից աճեցին շնորհալի երաժիշտներ՝ թավջութակահար, այժմ կոնսերվատորիայի դասատուներից Գուրգեն Աղամյանը, երաժիշտ մանկավարժ Էլյա Ռացախյանը, խմբավար Կոտիկ Բարոյանը և ուրիշներ:

Ուժեղ էր նաև մեր նկարչական մասնաճյուղը, որը ղեկավարում էր շնորհալի պիոներ-հրահանգիչներից, այժմ քաղաքաշինարար-ճարտարապետ Հրայր Իսաբեկյանը, նրա օգնականն էր Փանոս Սարգսյանը: Պիոներական շարքերում են իրենց առաջին քայլերը կատարել այժմ ժողովրդական նկարիչ Էդիկ Իսաբեկյանը, քանդակագործ Սամվել Մանասյանը, պետական օպերայի նկարիչ Միրզոյանը: Հրայրը նկարեց պատկոմական մեր թատրոնի վարագույրը, որը պատկերում էր Արարատի ֆոնի վրա ամբողջ հասակով կանգնած պատկոմը, վառած ջահը ձեռքին:

Մարմնամարզության մեջ անգամ մենք մտցնում էինք էսթետիկա: Լայնորեն օգտագործվում էին ռիթմիկ վարժություններ, որոնք կատարվում էին պատկոմական փողային նվագախմբի նվագակցությամբ:

Պատկոմներն առողջ էին, տոկուն, կենսախինդ, կարգապահ, անթերի էին մեր շքերթները, մեր մարզահանդեսները: Հաղթելով սկաուտներին գաղափարապես, մենք նրանց հաղթեցինք նաև ֆիզիկական դաստիարակությամբ:

1924—1925 թվականներին ունեինք մի քանի պատկոմական ֆուտբոլային թիմեր: Մենք՝ հրահանգիչներս, պարապում էինք սուսերամարտով, բռնցքամարտով, ըմբշամարտով: Ըմբշամարտի պարապմունքները անց էր կացնում Երևանում հայտնի մարզիկ Օնիկ Նարինջյանը:

Ամենայն իրավամբ մենք կարող ենք պնդել, որ Հայաստանում մասսայական ֆիզկուլտուրայի հիմնադիրը նույնպես եղել է պատկոմական կազմակերպությունը:

Այսպիսով 1921—1925 թվականներին ժրաջան աշխատանքով Հայաստանում ստեղծվեց առողջ մարմնով և առողջ մտքով պատանի կոմունարների մի ուժեղ կազմակերպություն:

*Ե. ԽԱԼԵՅԱՆ*

---

Ի դեպ, Անադիրի (Չուկոտիայի կենտրոն) և Երևանի միջև գոյություն ունի 9 ժամվա տարբերություն: Նրանց ժամանակը մեզանից առաջ է ինը ժամով: Այնպես որ, երբ Չուկոտիայի պիոներները Նոր տարի են դիմավորում, մեզ մոտ դեռ դեկտեմբերի 31-ի ցերեկվա ժամը 3-ն է:

Թողնենք Բերինգի նեղուցը և դուրս գանք Չուկոտյան թերակղզի: Անմիջապես կանգ կառնենք մի արձանախմբի մոտ, որը փարոսի տեսք ունի և ուղղված է դեպի Բերինգի նեղուց: Դա կանգնեցված է ի պատիվ Սեմյոն Դեժնյովի: Նա է հայտնաբերել այն հրվանդանը, որը հանդիսանում է Ասիայի ամենաարևելյան կետը: Նրա անունով էլ կոչվում է Դեժնյովի հրվանդան:

Ինչ վերաբերում է Չուկոտյան թերակղզուն, ապա նա հայտնի է ուղղակի Չուկոտիա անունով: Այդ դեպքում մեզ կարող է հետաքրքրել նաև նրա անվան առաջացումը: Նա այդպես է կոչվում թերակղզու բնիկ ժողովրդի՝ չուկչիների անունով: Ի դեպ, «ի» մասնիկը ունի երկրի իմաստ:

Չուկչիները սովետական հյուսիսում բնակվող ժողովուրդներից են, որոնց կյանքը շատ բանով նման է էսկիմոսների կյանքին: Ձմեռը հագնում են տաք մուշտակներ և սահնակներին շներ են լծում: Սրանք նույնպես զբաղվում են ձկան ու փոկի որսով:

Չուկչիների ընդհանուր թիվը հասնում է 12 հազարի: Նրանց հայրենիքը շատ մեծ է և գրավում է 738 հազար քառակուսի կիլոմետր տարածություն: Ունի ինքնավարություն, դա Չուկոտյան ազգային օկրուգն է:

Վարչական տեսակետից Չուկոտիան մտնում է ՌՍՖՍՀ Մագադանի մարզի կազմի մեջ: Չուկոտիայի կենտրոնն է Անադիրը:

Անադիրը քաղաքատիպ բնակավայր է, որը գտնվում է Բերինգի ծովի ափին, ծովով կապված է Հեռավոր Արևելքի նավահանգիստների հետ: Ահա այս հեռավոր բնակավայրում՝ Անադիրում կառուցվելու է պիոներական պալատ Սովետական Միության պիոներների ներդրած միջոցներով: Այդ նախաձեռնությունը պատկանում է Մոսկվայի քաղաքային պիոներական շտաբին: Վերջինս 1969 թվականի մարտի 11-ին որոշում ընդունեց Չուկոտիայում պիոներական պալատի կառուցման մասին: ՀամԼԿԵՄ-ի քարտուղարությունը հավանություն տրվեց այդ նախաձեռնությանը, արդեն մշակվել է պալատի նախագիծը, և Սովետական Միության տասնհինգ հանրապետությունների պիոներները շարունակում են իրենց ավանդը ներդնել այդ գործին:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*(աշխարհագրագետ)*

# ԻՆՉՊԻՍԻՆ ՉՊԵՏՔ Է ԼԻՆԵՆ ՆԱՄԱԿՆԵՐԸ

Վաղուց է, ինչ մի լավ սովորություն է արմատավորվել մեր դպրոցականների մեջ՝ նամակագրական կապեր հաստատել տարբեր քաղաքների, տարբեր հանրապետությունների և տարբեր երկրների իրենց հասակակիցների հետ: Այդ նամակներում նրանք միմյանց պատմում են իրենց ջոկատի հետաքրքիր նախաձեռնությունների, արշավների, էքսկուրսիաների, ֆիզիկայի ու մաթեմատիկայի, գրական ու թատերական խմբակների մասին, այն մասին, թե ինչ գրքեր են կարդում, ինչպես են սովորում, ինչ երազանքներ ունեն:

Ծանոթանալով դպրոցականների կողմից միմյանց գրած այդպիսի բազմաթիվ նամակների, հանդիպեցինք գեղեցիկ ձեռագրով, գեղեցիկ հայերենով ու բովանդակալից նամակների կողքին նաև այնպիսիների, որոնք գրված են անփույթ, տգեղ ձեռագրով, լի են աններելի տառասխալներով ու անհեթեթ մտքերով: Այս էլ հուշեց մեզ խոսք բացել այն մասին, թե ինչպիսին չպետք է լինեն նամակները:

Ամեն մարդ ցանկանում է արժանավոր բարեկամ ունենալ: Իսկ արժանավոր բարեկամ լինելու համար պետք է արժանավոր մարդ լինել, այսինքն լինել կրթված, խելացի, հարուստ ներքնաշխարհի տեր: Եթե դու բարեկամություն հաստատելու համար ընտրել ես նամակի ձևը, ապա, իմացիր, քո նոր ծանոթը քեզ ճանաչելու, քո մասին կարծիք կազմելու այլ հնարավորություն չունի, քո նամակից բացի: Նշանակում է, քո նամակը այն հայելին է, որտեղ դու արտացոլվում ես: Եվ այդ հայելուն նայելով է նա դրական կամ բացասական կարծիք կազմում քո մասին: Դու նրա հասցեն վերցրել ես, ասենք, «Պիոներ կանչ» թերթից կամ «Պիոներ» ամսագրից, որտեղ տպագրված է եղել նրա փոքրիկ բանաստեղծությունը կամ հոդվածը: Նա քեզ հետաքրքիր մարդ է թվացել և, հավանաբար է, ուզում ես բարեկամանալ նրա հետ: Իսկ նա քեզ ինչպե՞ս համարի հետաքրքիր մարդ և քեզ հետ ծանոթանալու ցանկություն ունենա, եթե ստանում է այսպիսի տողերով սկսվող նամակ.

«Ուզում եմ որ ծանոթանանք և ընկերական կապ հաստատել ինձ թվում է, որ կպատասխս Գայան է, իսկ ինչ ուզում էս իմանալ մեր ընտայինական պայման էր ես կասեմ ես ունեմ...»

Եվ կամ.

«Ծանոտագիր... Անցնեմ բարևների Գայանե ջան բարևի քո մոտիկ ընկերուհիներիտ... Ես սովորում եմ փ. միջ. դպրոցի 8-րդ դաս. Անունս Ազգանունս այսպես է...»

կամ թե.

«Ծանոթագիր,
Բարևագիր,
Չունեմ ուրիշ վերնագիր.
...Բարև բացողին, ջան կարդացողին Ամեն օր նստում եմ քարին, Ասում եմ չարին... Նաղքան նամակիս ներքին տողեր անցնելը...»

Այս և նմանօրինակ «նախաբաններից» հետո, հիշյալ նամակների հեղինակները փորձում են ներկայացնել իրենց ընտանիքը, նշել ընտանիքի անդամների թիվը: Եվ զարմանալի բան. նրանք չեն կարողանում ճիշտ կազմել այդ փոքրիկ ու հասարակ նախադասությունը:

«Մեր տունը բաղկացած է 5 անձից, որից երեքը տղա...»

«Մեր տունը կազմված է չորս հոգուց՝ մայրս...»

«Մենք բաղկացացենք 7 շնչից ունեմ երկու քույր 2 եղբայր... և դրանից են պապաս մամաս քրոջներիս անուններն են...»

«Ինձ ունեմ մեկ մ. և մեկ հայր...»

«Եղբայրս սովորում է Խ. Աբովյանի պատմողական ինստիտուտը...»

«Մերի ջան ես հիմա քեզ կծանոթացնեմ մեր ընտանիքի մասին...»

Այս բոլորը քաղված են տարբեր նամակներից, բայց այն տպավորությունն ես ստանում, թե դրանց հեղինակը միևնույն մարդն է, այնքան նման են տարբեր նամակներում թույլ տրված սխալները: Մինչդեռ դրանց հեղինակները ապրում են տարբեր քաղաքներում ու գյուղերում և տարբեր դպրոցների 5—8-րդ դասարանի աշակերտներ են:

Զարմանալի նմանությամբ այդ աշակերտներն իրենց նամակներն ավարտում են ճաշակից ու բովանդակությունից զուրկ, տգեղ քառատողերով, որոնք նույնիսկ վիրավորական են նրա համար, ում ուղարկվում են: Ի՞նչ կարող է մտածել, իսկապես, այն անծանոթ ընկերը կամ ընկերուհին, որին այսպիսի քառատող են նվիրում.

«Նստել եմ ծառի տակ
Գրում եմ քեզ հիշատակ
Գրող ուղարկող շատ չնչին
Բացող կարդացող շատ անգին»:

Իսկ 6-րդ դասարանցի մի աշակերտուհի այնքան անփույթ է գտնվել, որ շփոթել է այս քառյակի վերջին երկու տողերը՝

«Գրող ուղարկող շատ անգին
Բացող կարդացող շատ չնչին»:

Ապշելու բան չէ՞, թե ինչպես այդ նամակների հեղինակները տասնյակ գեղեցիկ և բարձրարվեստ բանաստեղծություններ սովորելուց և կարդալուց հետո, կարողանում են ոչ միայն հիշել այս անճաշակ ու վիրավորական քառատողերը, այլև ուղարկել իրենց հեռավոր հասակակիցներին, որոնց հետ ցանկանում են բարեկամանալ:

Այդ նույն աշակերտներն ու աշակերտուհիները, առանց երկար ու բարակ մտածելու, նամակներն ավարտում են կամ այսպիսի մաղթանքներով՝ «սրտանց ցանկանում եմ հաջողություն հանդիպես», կամ էլ այս 8-րդ դասարանցի աշակերտուհու նման՝

«...Այսքանով վերջացնում եմ իմ այս փոքրիք ու բարեհաճելի նամակս, և սպասում եմ քո նամակիտ»:

Այս նամակների մեջ չես հանդիպում մի ճիշտ նախադասու-




Առաջին անգամ դեղձանիկները գերության դատապարտվեցին հավանաբար 1496 թվից սկսած, երբ Իսպանիան գրավեց Կանարյան կղզիները (դեղձանիկի հայրենիքը): Դեղձանիկ պահելը Իսպանիայում արագորեն նորաձևություն դարձավ: Նրանք շատ թանկ էին և միայն հարուստ մարդիկ կարող էին իրենց թույլ տալ նման շքեղություն՝ ունենալ գորշ կանաչավուն երգիչ:

Մոտ 100 տարի դեղձանիկներ արտահանելու մենաշնորհը պատկանում էր Իսպանիային: Այդ մենաշնորհը նրանք կարողանում էին պահել իրենց ձեռքում այն պարզ պատճառով, որ արտահանում էին միայն վարուժանները, մարիների արտահանումը արգելված էր:

Բայց մի անգամ իտալական Լիվոռնո նավահանգստի մոտ խորտակվեց իսպանական մի առագաստանավ: Առագաստանավի վրա կային դեղձանիկներ, որոնց վաճառելու էին տանում ուրիշ երկրներ: Ազատություն ստանալով՝ դեղձանիկները թռան Էլբա կղզին: Նրանք այդտեղ բույն դրին և խաչասերվեցին տեղական թռչունների հետ:

Խառնածին դեղձանիկներն ունեին վառ դեղին վզիկ և սև ճանկեր: Նրանք շատ դուր եկան իտալացիներին, որոնք որսալով խառնածիններին՝ նորից խաչասերում էին Իսպանիայից գնված դեղձանիկների հետ:

Այսպես առաջացավ բոլորին հայտնի գեղեցիկ դեղին թռչնակը:




## ՊԱՏԵՐԱԶՄ՝ ՊԱՆՐԻ ԳԼԽԻԿՆԵՐՈՎ

*1841 թ. օգոստոսին բավականին արտասովոր ծովային ճակատամարտ տեղի ունեցավ Ուրուգվայի և Արգենտինայի նավատորմների միջև: Ուրուգվայական նավատորմի հրամանատարն էր ամերիկացի կապիտան Ջոն Կոն, իսկ արգենտինականինը՝ բրիտանական ծովակալ Ուիլյամ Բրաունը: Ճակատամարտի տաք պահին ուրուգվացիների գլխավոր հրամանատարին հայտնեցին, որ վերջացել է հրետանու արկերի պաշարը: Նա արդեն պատրաստվում էր գերի հանձնվել, երբ պատահաբար իմացավ, որ նավում կա... հոլանդական պանրի մեծ պաշար: Ի միջի այլոց, պանրի գլուխը նույն տրամաչափն ուներ, ինչ թնդանոթի արկը: Պանիրը երկար ժամանակ մնացել էր նավում և այդ պատճառով դարձել էր շատ կարծր: Կապիտան Կոն անմիջապես հրամայեց պանրով լիցքավորել բոլոր թնդանոթները և փորձնական համազարկ տալ: Ուրիշ ոչ մի բանի կարիք չզգացվեց. հակառակորդը սկզբում շփոթվեց, ապա խուճապի մատնվեց: Արգենտինացիներն իսկույն «կռահեցին», որ իրենց դեմ կիրառվում է ինչ-որ նոր գաղտնի զենք: Նրանց հրամանատարը նահանջի հրաման տվեց:*



թյան, մի խելացի մտքի, մի հետաքրքիր հարցի:

Չենք տալիս այդ աշակերտների անունները: Հույս ունենք, որ նրանք կանեն անհրաժեշտ հետևություններ, նախ կսովորեն, թե նամակ գրելիս ինչպես պետք է դիմի մեկը մյուսին, ապա կհետևեն իրենց խոսքի մաքրությանն ու գեղեցկությանը, կաշխատեն իսկույն չվատնել դպրոցական տարիները և ձեռք կբերեն գրագիտություն, կդառնան իսկապես գրագետ, իսկական կրթված մարդ:

Գրիչ վերցնելուց և անծանոթ ընկերոջը կամ ընկերուհուն նամակ գրելուց առաջ, պետք է հարգանքի կզգացում ունենալ այն մարդու նկատմամբ, ում գրում ես, և պետք է հիշել, որ բարեկամությունը թանկ բան է: Մի քանի տող խզմզելով և գցելով փոստարկղը, քեզ չի հաջողվի ո՛չ նամակագրական կապ, ո՛չ էլ բարեկամություն հաստատել մեկնումեկի հետ: Յուրաքանչյուր ոք իր համար փնտրում է արժանավոր բարեկամ: Իսկ արժանավոր բարեկամ և մարդ լինել՝ նշանակում է կրթված ու խելացի լինել:

*ՎԱՀԱՆ ՄԽԱԿՅԱՆ*

# ՃԱՆԱՉԻ՛Ր ԵՎ ՀԱՎԱՔԻ՛Ր

## ԲԱՆԳԻ

Պատկանում է մորմազգիների ընտանիքին: Ապրում է երկու տարի, ծաղկում է մեկ անգամ՝ կյանքի երկրորդ տարում, իսկ սերմերի հասունացումից հետո մահանում է:

Այգիներում, բանջարանոցներում և այլուր աճում է որպես մոլախոտ: Ծաղկում է մայիսից մինչև օգոստոս ամիսը:

Դեղագործության համար պիտանին բույսի տերևներն ու ցողունն են: Սրանից ստացված դեղամիջոցները օգտագործվում են ջղաձգությունների ու ցավերը մեղմացնելու համար, ստամոքսի ու տասներկումատնյա աղիքի խոցային հիվանդությունների, շնչարգելության դեպքում, օժտված է նաև կենտրոնական ներվային սիստեմը հանգստացնող հատկությամբ և կիրառվում է հոգեբուժության բնագավառում: Բանգիի բուժիչ հատկությունները վաղուց են հայտնի, և այդ դեղաբույսը ժողովրդական բժշկության մեջ օգտագործվել է դեռևս մեր թվարկությունից շատ առաջ:



Բանգիի բոլոր օրգաններն էլ խիստ թունավոր են, ուստի նրա հետ գործ ունենալուց հետո անհրաժեշտ է ձեռքերը խնամքով լվանալ:

## ՍԱՐԻ ՉԱՄԻՉ



Խիստ ճյուղավորված, մշտադալար թուփ է՝ 20—25 սմ բարձրությամբ: Ծողունը փայտացած է, ուղղաձիգ կամ փռված: Պատկանում է էֆեդրուազգիների ընտանիքին: Երկտուն է, ունի արական և իգական ծաղիկներ: Ծաղկում է մայիս-հունիս ամիսներին:

Աճում է լեռների ցածրադիր գոտիներում՝ ավազոտ ու քարքարոտ հողակտորներում:

Դեղագործության մեջ օգտագործվում են կանաչ ճյուղերը բույսի ծաղկման ու պտղակալման շրջանում:

Սարի չամիչի բուժիչ հատկությունները Չինաստանում հայտնի են եղել ավելի քան 3000 տարի առաջ: Բուժող նյութը էֆեդրինն է: 1924 թվից սկսած այն լայնորեն օգտագործվում է բրոնխիալ շնչարգելության (ասթմա), «կապույտ հազի», ծովային և ալերգիկ հիվանդությունների դեպքում: Էֆեդրինը խթանում է կենտրոնական ներվային սիստեմին՝ բարձրացնելով շնչառական կենտրոնի գրգռականությունը:

Ժողովրդական բժշկության մեջ սարի չամիչը օգտագործում են ռևմատիզմը, լեռնային հիվանդությունը, մալարիան և խոցային հիվանդությունները բուժելու համար:

## ՍԵՐԻՆՈՍ-ՓԱՅՏՓՈՐԻԿԻ ՊԱՏԱՌԱՔԱՂԸ

*Շատ հնարամիտ է սերինոս-փայտփորիկը: Նրա կտուցը այնքան երկար ու սուր չէ, ինչպես մեր սովորական փայտփորիկինը, ուստի որսի դուրս գալիս, նա գործիք է վերցնում իր հետ: Ո՛րն է նրա գործիքը: Դա կակտուսի փուշն է: Փուշը կտցին նա վերուվար է անում ծառաբնի վրա և հենց որ միջատ է տեսնում, «պատառաքաղը» խրում է միջատի մեջքին, դուրս է քաշում ու կտցում ուտում: Եթե փուշը հարմար չի լինում, վերցնում է մի փայտի կտոր: Իսկ հարմար փայտիկը նա երկար ժամանակ կրում է իր հետ: Այս տարօրինակ փայտփորիկը ապրում է Հարավային Ամերիկայում, Գալապագոս կղզում:*

*Իսկ Ավստրալիայի դժվարամատչելի մացառուտներում ապրում է մի այլ տարօրինակ ու հնարամիտ թռչուն, որին անվանում են մանուշակագույն հոլիկաշինարար: Սա, իր բնից բացի, շինում է նաև մի հոլիկ՝ երկու մուտքով: Հոլիկի կառուցման համար օգտագործում է ճյուղեր, տերևներ, հետո պարդարում է թութակի նախշուն փետուրներով, խխունջներով, գունավոր քարերով, շորի կտորներով: Իսկ վերջում փայտի կտորներով, քարերով ցանկապատում է իր բակը և նոր միայն թուխս նստում:*

*Բայց ահա տեսեք, թե ծովային կուղբն ինչ է անում. նա մերթ ընդ մերթ սուզվում է ջրի հատակը, այնտեղից որսում բերում է որևէ խխունջ և հետն էլ՝ մի քար: Պառկելով ծովափին, մեջքի վրա, քարը դնում է կրծքին և խխունջը այնքան է խփում այդ «կնդանին», մինչև որ փշրվի ու կարողանա խեցեմորթին ուտել: Մի անգամ նկատել են, որ մեկուկես ժամվա մեջ կալանը (կուղբը) հիսունչորս հատ խեցեմորթ է հանել ծովի հատակից, կրծքին դրել և քարե «կնդանի» վրա ջարդել, տեղալով մոտ 2 հազար հարված: Հետաքրքիր է և այն, որ քարը, եթե հարմար է, այլևս ձեռքից չի գցում, դնում է թևի տակ, սուզվում է ջուրը, որսը դուրս է բերում և նույն քարին խփելով, ջարդում ուտում է: Նա ծովային խխունջներին քարով խփելով է պոկում ստորերկրյա ժայռերի կողերից:*

# ԴԵՂԱԲՈՒՅՍԵՐ

## ԵՂԻՆՋ



Տարածված է Հայաստանի գրեթե բոլոր շրջաններում:

Բազմամյա կոճղարմատից դուրս են գալիս մի քանի ուղղաձիգ ցողուններ: Թե՛ ցողունը, թե՛ տերևները պատած են մազմզուկներով, որոնք պարունակում են թունավոր հեղուկ: Մազիկների գլխիկները շատ սուր են և փուխր, ամենաթույլ հպումից խրվում են մարդու մաշկի մեջ ու ջարդվում՝ թափելով այնտեղ թունավոր հեղուկը: Վերջինս ուժեղ գրգռում է ու քոր առաջացնում:

Եղինջի տերևները ժողովրդական բժշկության մեջ օգտագործվում են հիմնականում որպես արյունասրգել, միզամուղ և հակատենդային միջոց: Վերջին տարիներս եղինջից պատրաստում են լուծույթներ և գործածում որպես արյունախոսությունները կանխող նախապահպանական միջոց:

Նրանից ստանում են նաև բուսական ներկ՝ քլորոֆիլ, որը մեծ կիրառություն ունի դեղագործության, սննդի ու օծանելիքների արդյունաբերության մեջ:

## ԱՌՅՈՒԾԱԳԻ

Բազմամյա խոտաբույս է՝ 50—150 սմ բարձրությամբ: Պատկանում է շրթնածաղիկների ընտանիքին: Ցողունը սնամեջ է, քառանիստ, սովորաբար ճյուղավորված: Ուղղաձիգ ցողունի վրա կույգերով՝ հակադիր դասավորված են կտրտված տերևները, որոնք հիմքից դեպի գագաթ մանրանում են:

Շատ տարածված է Եղեգնաձորի, Ստեփանավանի շրջաններում, Սևանում, Արագածի վրա, Մաղկաձորում, Հանքավանում, Երևանի շրջակայքում և այլն: Աճում է բնակավայրերի մոտ, ցանքերում:



Դեղագործության համար հավաքում են ծաղկող բույսի վերին մասը՝ ծաղիկների ու տերևների հետ միասին:

Առյուծագին օգտագործվում է սրտի նևրոզների, կարդիոսկլերոզի, ներվային բարձր գրգռականության դեպքում, ինչպես նաև հիպերտոնիկ հիվանդությունների սկզբնական շրջանում: Նրա պատրաստուկները օժտված են կենտրոնական ներվային սիստեմը հանգստացնող և սրտի աշխատանքը կանոնավորող հատկությամբ:

*Վ. ՈՍԿԱՆՅԱՆ*

*Կենս. գիտությունների թեկնածու*




Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԻՇԽԱՆ ՆԱԶԱՐՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-200, ул. Кармир банаки, № 15. почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05292: Պատվեր 450: Տպաքանակ՝ 68700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/VII 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.


## ՈՒՂՂՈՒՄ

*«Պիոներ»-ի այս տարվա № 6-ում «Լենինականի պիոներիայի առաջին քայլերը» հոդվածի սկզբում Լենինականի պատկոմական կազմակերպության հիմնադրման տարեթիվը 1921-ի փոխարեն սխալմամբ տպագրվել է 1920։*

